Tekeean, Vahan.

ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ

# ՀՈԳԵՐ

... Car les lois changent, les morales se transforment et la beauté demeure, immaculée, sur les siècles qu'elle seule illumine ...

OCTAVE MIRBEAU

L'importance est dans le regard et non dans la chose regardée. Qu'importe d'où vient l'extase si l'extase nous vient.

JEAN LORRAIN

ՓԱՐԻԶ
«ՀԱՄԱԼՍԱՐԱՆ»Ի ՏՊԱՐԱՆ
1901

Digitized by Google

## Ա

Կը վերադառնանք մեր հին սէրերուն,
Ինչպէս ճամբորդներ չուրջը աշխարհի.
Ո՛վ Մոռացումին մէջ թաքչած խոհուն,
Գորովի ջահն որ առկայծ կը վառի։

Ինչպէ՛ս կը ճանչնանք հասակն ընտանի
Եւ աչուըներուն նայուածքը ժըպտուն.
Կը դողանք յանկարծ, երբոր կը կանգնի
Հասակն ընտանի անկիւնը ճամբուն։

Հին Տենչանքներուս խո՛ւրձը քայքայուած,
Ո՛վ սուրբ խարազան զոր կը համբուրեմ,
Քըշէ՛ առջեւէդ մեզ դէպի Եդեմ...։

Ըրէ՛ որ յիշենք ամէն մէկ հարուած,
Վէրքերն զոր բացիր թող կոտտան նորէն,
Թո՛ղ որ արտասուենք սրտերնուս խորէն

Digitized by Google

Բ

Այս իրիկուն հըպարտութեամբ ձեզ կուգամ
Ամէնօրեայ ծըխել ծըւէնը խունկիս·
Ձեր շուրթներուն աննիւթ համբոյրըս անգամ
Ես կը մերժեմ ու կ'արգիլեմ որ ծունկիս

Նստած վըրայ ձեր թեւերուն շղթայով
Անուրջի գաղջ վայելումներ ինծի տաք···
Ո՛չ. բարձրաբերձ սարին գագաթն ապահով
Մընացէ՛ք միշտ ու հեռուէն, ըսպիտակ

Լոյսի մը մէջ մըթութենէս տեսնե՛մ ձեզ·
Թողէ՛ք վարէն ես պաշտամունքըս ու ծէս
Խոնարհաբար, լըռողաբար կատարեմ···

Ո՛վ տեսիլքը աչուըններուն նըրազող,
Քօղերուն ո՛վ ճառագայթումն լուսաշող,
Ո՛վ անպըտուղ Տենչանքը մեծ, հոլին դէմ···։

## Դ

Լ. Ա. Տ.ին

Բազմութեան մէջ, սրտիս խորքէն ցած, շատ ցած
Կը մրմնջեմ անունն Անոր ու լերան
Վըրայ, մինակ, ձայն կը պոռամ, գինովցած,
Վախով, թեթեւ յանկարծ թռչնոյ մը նըման։

Եւ առանձին կը հանդըպինք իրարու.
Ես, ուժգունած, գըլուխս անդին կը դարձնեմ,
Մըտածելով չըզուրցուելիք խօսքերու,
Չերգըւելիք եղանակի մը վըսեմ...։

Եւ հոգիիս կ'ըսեմ ցաւով «Ցանցաւոր
«Սիրոյ պատիժն է լըռութիւնը անվերջ.
«Դուն չըճանչնաս պիտի ամբողջ կեանքին մէջ

«Խոստովանուած զգացումին լուսաւոր
«Ուրախութիւնն։»... Հոգիս, տրտում, կը դիտէ
Եւ կ'ըսէ ինձ «Ո՞ւմ է յանցանքը միթէ...»

———



# ՀՕՏԱՂ

*Ատոմ Եարճանեանին*

*Դաշտ մը անսահման. չարքեր լեռներու.*
*Ծով մը կանանչի, երկիւղը պակաս.*
*Ցած ծառեր բուսած հեռուէ հեռու*
*Որոնց ոտքին տակ փոխն ի փոխ կուգաս ;*

*Հօտա՛ղ, հանգչելու եւ երազելու։*
*Երեկոյեան դէմ, երբոր կը բանաս*
*Կուրծքըդ զեփիւռին եւ ճերմակ, հըլու*
*Կուգան դառնուկներն հօտերէդ անհաս*

*Փայփայուիլ ծունկիդ եւ ձեռքերուդ դէմ,*
*Հօտա՛ղ, միամիտ ու պարզ հոգիով*
*Լըսէ՛ անոնց մէջ վազող իբրեւ հով*

*Քայլը Տենջանքիս որ լուռ, ծանրադէմ*
*Կը մօտենայ քեզ, սպասելով որ*
*Գրկեն իր վիզն ալ թեւերըդ աղուոր։*

Ե

# ԱՍՈՒՊՆԵՐ

—

Աչքերըս լեցուն են ասուպներով.
Ամառ գիշերներ ժողվեցի զանոնք
Երբոր երկնքէն կ'իյնային սիրով,
Ինչպէս քունի մէջ՝ լոյս աչքե՛ր անհոգ։

Ժողվեցի զանոնք, ամառ գիշերներ,
Աչուըներուս մէջ, երբոր երկնքէն
Կ'իյնային՝ չինկած հողին վըրայ դեռ,
Ջինջ սէրե՛ր ծընած եւ մեռած արդէն։

Հիմա իմ հոգիս լուսաւոր է միշտ,
Աչքերս գոհարի տուփեր են մէյմէկ
Եւ օրը երբոր շատ ճնշէ իր վիշտ,

Շատ աղքատ մընամ եւ մըռայլ ու մէգ
Շրջապատէ զիս՝ աստղեր կը կազմեմ
Այն ասուպներէն եւ լուռ, կը դիտեմ։



## ՏԵՆՉԱՆՔՆԵՐԸ

*Տենչանքէն վայելումին*
*կ'անցնիմ եւ վայելումին մէջ*
*տենչանքին կը փափաքիմ։*
ԿԷՕԹԷ

*Մանիշակները թող երբե՛ք չըթօշնին,*
*Թող նըւագին զիս հըմայող չիգա՛յ վերջ,*
*Զըբըզըկտի՛ արշալոյսին ծիրանին*
*Եւ տենչանքներն չըհասունանա՛ն սրտիս մէջ։*

*Օ՛հ, ինծի տուր, Տէ՛ր, միշտ երազը անշէջ*
*Զոյգ մը կապոյտ աչքերու մէջ նայուածքին,*
*Աննաս, անծայր վերամբարձման մը անէջ,*
*Համբուրելո՛ւ մարմինին մէջ լոյս հոգին։*

*Թող Տարփանքներըս, Տէր, մինչեւ հոն տեւեն*
*Մինչեւ հոն ուր ձեռքը ձեռքիս մէջ կ'իյնայ...*
*Թող Տենչանքին իյնայ կոհակը մէկէն։*

*Խընայէ՛ ինձ Ցաւեցումին անխընայ*
*Խոնջէնքը դառն, ինծի, ո՛վ Տէր, մի թոյլ տար*
*Բռնել փափուն երազիս դունատը օձառ։*



Digitized by Google



Երբեմըն պէտք է փափաքը յիմար
Ըստուերին մէջէն՝ չինուած կամաւոր՝
Ցատկելու յանկարծ ու երթայ Անոր
Իյնալու ոտքին քով եւ անդադար

Աղաչանքներով զԱյն ողոքելու,
ՁԱյն փայփայելու յուլօրէն, երկար
Գրգուանքներով լուռ կամ ձայնով տըկար
Ըմպելու բառեր քաղցր, աղերսարկու...։

Երբեմըն պէ՛տք է փափաքը՝ ոսկի
Ինչպէս հառագայթ՝ բայց երբեք, երբեք
Զըլլայ որ Մութին սահմանէն ելլէք,

Զըխամրեցընէ՛ք վարդն որ կը ծաղկի
Ձեր աչուըններուն մէջ ամէն օր նոր...

Իջէ՛ք անոր հետ փոսի մը մէջ խոր։

Է

## ՆԱՅՈՒԱԾՔԴ

—

Նայուածքըդ մոռցայ ու անտանելի
Է ինծի անվերջ որոնումը այս
Մըտքիս ծալքերուն մէջ ուր խոյս կուտաս,
Օդին մէջ ուրկէ յոյսըս անյեղլի

Կըսպասէ որ օր մ'ինծի նորէն գաս . . . ։
Երբոր, դիպուածով, Նայուածքըդ ինծի
Առաջին անգամ դարձաւ՝ ծըծեցի
Ձայն ինչպէս ջուրի մէջ ոսկի աւազ։

Եւ անենջացի, սէ՛րս, որ տարիներով
Նայուածքիդ ներքեւ խեղճ սիրտըս խըռով
Թընանայ . . . ։ Ըսպունգ, ուզեցի ըլլայ

Որ վըրաս ինկած, յուշիկ, անկասկած
Ծըծելէ յետոյ հոգիս լըճացած,
Ալ ինձմով լեցուն՝ գերեզմա՛նս ըլլայ . . . ։

Digitized by Google



Տ. Մ.ին

Անցաւ գընաց ու կըսպասեմ իր դարձին
Ինչպէս մոմ մը՝ հովին դէմը դողալով.
Անցորդները պատուհանքով զիս խնդեցին
Եւ ինչպէս մոմ մ'օրուան վըրայ փըչէր հով

Ես կը հալիմ ըսպասելով իր դարձին։
Ու կը խորհիմ «Ինչպէս երկա՛ր, ձանձրացող
«Թարթիչներու տակ աչքերով՝ սառնձին
«Կ'երթայ, քալուածքն գետնի փոշին հըմայող։

«Որքա՜ն անուշ պիտի ըլլար իր քովէն
«Քալել, յուշիկ, ճամբու մը մէջ ծաղկաշէն
«Շնչելով լո՛ւռ վարդերուն սիրուն անձնուէր

«Մինչ կը պատէ խաւարին ցանցն ալ ըզմեզ...
«Ի՛նչ երջանիկ պիտի ըլլար, գողի պէս՝
«Ատեն ատեն նայիլ սիրով ուսն ի վեր...։



Digitized by Google



Ո՛վ ծաղիկները հոգիիս, ծաղկեցէ՛ք,
Նոյն իսկ եթէ ձեզ շնչելու, դգուելու
Զիգան աղուոր ձեր եղբայրները երբեք...
Տաճարին մէջ խունկ մը, շող մը, ալելու

Մ՚ինչպէս՝ թող վե՛ր ձեր բուրումը բարձրանայ։
Ո՛վ կոկոններ ծաղիկներուն քումս ի վեր,
Երբ կը թօշնին անոնք՝ ահա կը բանայ
Գեղեցկութիւնը ձեր չըքեղ իր թեւեր։

Օտարական սիրելիները սրտիս
Որ օր մ՚անցաք կեանքիս դաշտին ընդմէջէն՝
Երեկոյեան զեփիւռներն երբ կը փըչեն

Ձեր Վախճանին կը խորհիմ եւ Հանգիստին՝
Մըխիթարուած, լուսաւորուած ալ հոգւով՝
Ծաղիկներու մէջէն անցած իբրեւ հով...։



## Թ'Ա

# ՄՈՒԹԻՆ ՄԷՋ

Մութին մէջ կ'ուզեմ որ կեանքըս անցնի
Երազի մը պէս մեղմ ու կարճատեւ,
Անձայն, անշըշուկ, ամէնէն գաղտնի
Լայն ճամբուն մէջէն քայլով մը թեթեւ
Առանց ըստուերիս շըղթայէն բըռնի։

Չեմ ուզեր տեսնել աստղերը երկնի
Որոնք կը բացուին հոն՝ ժըպիտ իբրեւ՝
Իբրեւ ժըպիտներ մարդոց ծերունի
Մութին մէջ։

Ինչպէս որ ցըցուած վիզէ մը ծխանի
Մուխը ելլելով կ'երթայ յամրաթեւ
Ցնդիլ օդին մէջ եւ իրեն ետեւ
Չըթողուր ոչ մէկ հետք յիշատակի,
Այնպէ՛ս թող իմ կեանքս հալի՛, տարտղնի՛
Մութին մէջ։

## ԺԲ

*Օգնելու համար ինկած հոգիիս*
*Վեր կանգնիլ նորէն, ո՜վ իմ անծանօթ,*
*Ո՜վ իմ բարձրաշուք, ո՜վ իմ քաղցրահոտ*
*Տղաս, մօտեցո՜ւր հոգիդ հոգիիս։*

*Այսպէ՜ս երազ մը, քովըդ ամէն օր.*
*Ամէն օր քիչ մը աւելի խոնարհ*
*Մինչեւ որ այլ եւս հետքը չըմընար*
*Անցեալ կսկիծիս, վէրքերուն անոր։*

*Ո՜վ յօժարակամ Զրկանքին ճամբան*
*Առաջնորդող դուռ մը զոր կը բանան*
*Իմ հիացքներուս բալլիքներն ոսկի...*

*Սըրահներու մէջ շրջելու համար՝*
*Ամբողջ սիւնազարդ եւ ամբողջ մարմար՝*
*Ուր Հանդարտութիւնը կը բնակի...։*

Digitized by Google



Նայուածքըդ չար էր, բայց վարժուեցայ.
Ու ծըռնոտ անհնազանդը կամաց, ինչպէս
Երկար ջուրին քայլ մը ընդծովեցայ։
Հիմա, ցորենի խիտ արտի մը պէս՝

Երբոր իրիկուան կը փըչէ զեփիւռ՝
Կը դողամ ամբողջ մարմինովըս երբ
Հեռուէն կ'անցնիս։ Յուրաւմներ են բիւր
Շուշան, յերեկի եւ մանեկաւ կերպ

Ծաղկանց արտոց մէջ քալել կը կարծեմ,
Որոնք կ'ըղձլխեն զիս՝ երբոր կ'անցնիս...
...Անզգուած, յանկարծ, իմ նայուածքիս պէս

Կը մոռնամ ինձ ու լոյս, կը կանգնիս.
Եւ կը տանիմ թեւս առաջ, անդիտակ,
Գգուելու ձեռքիս մէջ թուշըդ ճերմակ...։





## ԺԳ

Աղուոր դէմքերն, ի՛նչ անտարբեր նայուածքով,
Կանցնին քովէս ու կը նայիմ ետեւնէն.
Այնչափ շատ են որ նախանձէս անոնց քով
Կը գալարուիմ խորհելով թէ ամենէն

Ես ոչ մէկուն կրնամ բառ մը, ոչ մէկ բառ,
Արտասանել պաղատելով, դողալով,
Քովէն անձայն անցած պահուս ունկն ի վար.
Թէ վայրկեանի շըքեղ երազըս ի հով

Կը ցրուըւի, կը կորսըւի, թէ երբեք
Իմ ցաւատանջ սրտիս բերանն անյագուրթ
Պիտի կարմիր գինին չըմպէ լիաշուրթ...

Երբե՛ք սիրոյ մատուռին մէջ ծնրաբեկ,
Անզուսպ հեղեղ մ'ուրախութեան 'ւ արցունքի
Պիտ' վերամբարձ ձեռքերուս մէջ չըյորդի...։






# ԺԱՄԱԴՐՈՒԹԻՒՆԸ



*Դողացող լոյսին տակ լապտերներուն,*
*Սառած մայթին վրայ, կը քալէ խոհուն։*

*Աչքը կը վառի երբոր հեռուէն*
*Կը տեսնէ մէկն որ կուգայ դէպ'իրեն։*

*Կ'անցնի՛ այն մարդն ալ. գլուխը կ'իյնայ,*
*Աւելի տըխուր, իր կուրծքին վըրայ։*

*...Ուսին վըրայէն մէկուն կը նայի.*
*Կը ժպտի անոր ժըպիտ մ'հիւանդի։*

*Թեւը կ'երկնցնէ մէջքի մը անտես,*
*Շրթներն կը նետեն համբոյր մ'հըրակէզ։*

*Կը դիտէ հեռուն, պահ մը կը խոկայ*
*Ու կը մրմնջէ «Գիտեմ, չպիտի գայ։»*

*Դողացող լոյսին տակ լապտերներուն*
*Սառած մայթին վրայ, կը քալէ խոհուն։*



Digitized by Google

ԺԶ

# ՎԵՐԱԴԱՐՁ

*Սուրէն Պարթեւեանին*

Ապրի՛ք, ապրի՛ք։ Դուք դեռ ինծի յոյս կուտաք։
Մաքուր, առողջ մարմիններուն ձեր գիմաց,
Պատահաբար ինծի դարձող սեւ ու տաք
Ձեր նայուածքին ներքեւ, յանկարծ ու կամաց

Հոգիիս մէջ փափաքը հին կ՚արթննայ
Ձեր հոգիին հետ անըսքօղ միութեան՝
Ինչպէս խոստում մ՚ինձ՝ անզաւակ քահանայ
Կը բարձրանայ վե՛ր բուրվառէ մը բուրեան։

Օ՛հ, դեռ մեծ եմ, դեռ պզտիկ եմ՝ պատանի
Որ ճանչցաւ Սէրը անպահանջ, ինքնագոհ.
Դեռ ունիմ ձայն՝ արաբական մատանի
Զոր դարձնելով կը բանամ դուռը անգոյ

Ճերմականերկ, հայելիազարդ պալատիս.
...Ա՛հ, հոն ես դուն զոր միայն օր մը տեսայ...
Եւ դուն, խպնո՛տ, անոր մէջ կը պըտըտիս...
Ո՛վ նախանձիս իմ առարկան, հոն փեսայ

Digitized by Google

Քեզ կը տեսնեմ, հարսանեկան քեզ սեղան
Նստեցուցած՝ կը ծառայեմ քեզ, խոնարհ...
Ո՛վ մանկական աչուըներուն հեզ տըղան,
Ատենը հոն կ'անցնի ու քեզ չըտեսնար...։

Ապրի՛ք, ապրի՛ք. օ՛հ, մեծ եմ դեռ, ու պըզտիկ...
Աղուամազէ օրրան մը դեռ որ բընաւ
Չի կանգ առներ, բազմոց մը ուր կը նստիք,
Շուշան թերթեր, աղաւնի մը որ ծընաւ

Դեռ նոր, դեռ հոն՝ հոգիիս մէջ կը սպասեն...
Բայց ես ինչո՞ւ կը գոցեմ աչքըս իսկոյն
Եւ երկիւղով, ինչպէս ճամբորդ մը անզէն,
Կը փախչիմ ձեր Վըճիռին տակ գերագոյն...։



Digitized by Google

## ԺԵ

# ԿԱՐԱՒԱՆԸ

Հորիզոնէն կարաւանն է կը փրթի․
Ու կը սպասեմ։ Վէտվէտումներն ուղտերուն
Կը գըծագրուին ու կը մեծնան, օրօրուն
Կը մօտենան, շողացնելով արծաթի

Սանձերն իրենց․․․ ։ Ու կը սպասեմ։ Անջրդի
Անապատէն ծարաւ մըն է անանուն
Ջոր հոգւոյս մէջ այդ քալողներն կը լընուն․․․ ։
Մինչ արեւն ալ դաշտին ետեւ կ'անհետի։

Եւ կը լըսեմ, վէտվէտող ծովը մութին
Բոժոժներուն ղօղանջը դաշն ու տրտում,
Մանուկներուն, կիներուն սիրտ ի խնդում

Աւետաւոր ճիչերն ու երգ․․․ ։ Բայց, մըթին,
Կուլան աչքերս երբ անոնց մէջ չեն ճանչնար
Ինչ որ գընաց չը դառնալու ա՛լ համար․․․ ։

## ԺԸ

Աւազին մէջ ես կը խըրիմ ամէն օր
Ու որչափ վար իջնեմ այնչափ մըսիս մէջ
Կը զգամ. խայթուածքը տենչերու նորանոր,
Այնչա՛փ կ'այրէ ծըխոտ սիրտըս սէրդ անշէջ։

Գիշերին մէջ ես կը ցատկեմ անկողնէս
Եւ փարելով ճերմակ բարձիս, կ'արտասուեմ,
Կը պաղատիմ ունենալու համար քեզ
Վերմակին տակ, փայփայանքով, կուրծքիս դէմ։

Եւ կը դողդղամ, ա՛լ անկարող ննջելու...
Հիմա անզիղջ մեղաւորն եմ ես՝ հըլու
Ծանրութեանը տակ մեղքին եւ ա՛լ ոչինչ.

Պիտի բանայ կոյր այս աչքերը լոյսին.
Կըրկըռացող հիւանդ գորտն եմ ճահիճին
Որ կ'անարգէ աղբիւրներուն ջուրը ջինջ։

Digitized by Google



# ՍԷՐՍ



*Ինչպէս տզրուկ մը սրուակի մէջ թեթեւ՝*
*Սէրս կը կծկի, կը պզտիկնայ, կ'իջնէ վար...*
*Ու կը մոռնամ կարծես զայն... մերթ ալ երկա՛ր*
*Կը տարածուի կորութիւնովը իր սեւ*

*Եւ կոկորդիս կը զգամ կպչումը անոր . . . ։*
*Ի՜նչ դժբաղդ եմ, կըսեմ յաճախ ինքզինքիս,*
*Այսքան տըկար՝ ձեռքըս եւ յամըր՝ հոգիս,*
*Հանդուրժելու անոր ցաւին ամէն օր։*

*Եւ կը թողում որ ան խեղդէ յամրաբար*
*Օղակներուն մէջ իր, յոյզերըս ամէն.*
*Իր ակռաները կըզգամ որ կը քամեն*

*Հիւթն հոգիիս տենչանքներուն բարերար*
*Եւ երազիս լոյս թըռիչները բոլոր*
*Կը քաշուին վա՛ր անոր կապէն սեւոլոր . . . ։*



Digitized by Google

## Ի

Կը հետեւիմ վախով թեթեւ քայլերուդ՝
Նըւագաւոր ինչպէս քընար մը որուն
Կը ճըմլէ սիրտըս արձագանգը անգութ...։
Ո՜հ, դիպուածաւ դարձուր գըլուխըդ սիրուն ·

Եւ չը հատած ժողվէ՛ աչքիս մէջ Սէրին
Գանձը անհուն, գանձը չըքեղ, յորդահոս...
Շընչէ՛ վարդերն զոր հրապոյրներդ ինձ բերին՝
Զը թափթըփած տերեւներու նըման փօս...։

Զի ես՝ շատոնց սրբագործող քահանայ,
Ո՜վ Սրբութիւն, երբոր այսօր ծընրադիր
Քեզ պատարագ մատուցանել ի խընդիր

Շընորհքներուդ կուգամ՝ գիտե՛մ որ չըմնայ,
Վառի՛ պիտի բուրվառիս մէջ խունկն անուշ...
'Ի անոր համար աղօթքիս մէջ կուլամ յոյժ...։



## ԻԱ

# ՊՈՂԻԿՐԱՏԻ ՄԱՏՆԻՆ

—

*Սամոսի ծաղկեալ ծովափին վըրայ,*
*Իր պարտէզին խաժ վըրաններուն տակ,*
*Ալիքներուն դէմ որոնց բովանդակ*
*Մեղեդին հոգւոյն մէջ կը սոսորայ՝*

*Ընկողմանած յոյլ՝ Պողիկրատ, անվիշտ,*
*Ոսկի բաժակէն կը խըմէ գինին՝*
*Սամոսի անուշ գինին թանձր ու հին*
*Զոր կը լեցընէ մանկլաւիկ մը միշտ։*

*Քովն է Բատիւլլէս զոր Անակրէոն*
*Երգեց, իր քըսան տարիներուն վեհ*
*Գեղեցկութիւնով...։ Երբեմն կը գովէ*
*Պողիկրատ իր գեղն եւ երբեմն ալ, հոն,*

*Մըտերմին ուսին վըրայ կը թողու*
*Աչքերուն փակուիլ հեշտանքով արբշիռ...։*
*Իր երջանկութիւնը չունի կըշիռ...։*
*Բայց յանկարծ մութին էջքը ահարկու*

Digitized by Google

Կը ցնցէ հոգին՝ ցայնժամ անխըռով…
Ջեռքեր, մագիլներ ալիքներէն վեր,
Իր վրայ կ'երկարին քանդել հիմնաւեր
Իր նըսեհին տունը իրենց խեռով…։

Սիրողն այն ատեն գաղտ ու կամովին
Կը հանէ անգին Թարշիշը մատէն
Եւ աստուածներուն որ զինք կը դիտեն

Կը նետէ՝ փըրկանք՝ զայն բացը ծովին…։



## ԻԶ

# ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ

Հովիտ մը անցեալս թաղելու համար,
Ջուրեր լուալու համար իմ հոգիս՝
Աւազաններու մէջ հասող մարմար
Որոնց խորն նայիլ դուն կը փափաքիս․

Թռչուն մը՝ իմ ցաւս տանելու համար,
Հովեր՝ վիրակապ մշտահոս վէրքիս՝
Եւ երգելու երգ մ'ինչպէս ջայլամայր
Զոր լըսել ու լալ դուն կը փափաքիս ։

Որպէս զի մտնես, ինչպէս պալատիդ
Մէջ, քեզի համար բարձրացուած՝ ծովի
Մը եզերք՝ ճերմա՛կ, գըթա՛ծ թաղուհի,

Իմ հոգիիս մէջ լուռ ու անքըթիթ...
Քայլերուդ առջեւ, կոխելով ծաղկանց
Ցիշատակներուս վըրայ փեթթըուած...։

ԻԳ

## ԿՈՉ

Խաւարի մէջ, քօղերու մէջ փաթթուէ՛ ։
Ես ջղջիկն եմ որ կը տեսնէ գիշերին
Մէջ ծածկըւած ու սահելով եռեւէ
Եռեւ անձայն հըրապոյրները սէրին ։

Անցի՛ր քովէս ու թող օր մը, շատ օրեր
Երբ իրիկունը կ'իջնայ վար երկնքէն,
Թողուած՝ հոգիս ու նայուածքս ալ՝ աներեր
Յարուցանեմ մութին մէջէն՝ երբ կ'երգեն

Հոգեվարքներ՝ քու պատկերըդ անընտել...
Իմ տենչանքներըս թող վըրադ չինեն բոյն
Եւ հոգիի՛դ մէջ ծաղկանիւս, նրբաթել... ։
Ինձ շընորհած Տիրոջ քանքարը համբուն

— Անուրջներուս — թող տոկոսի քովդ մընայ,
Թող որ օր մը երբոր նորէն հանդըպիմ
Քեզի՝ ծաղիկ որ բաժակը կը բանայ՝
Բացուի՛ հոգիդ նայուածքիս տակ մտերիմ...

Թող որ գգուեմ տատրակները հոն ծընած,
Բիւրապատիկ թող որ ժողվեմ Երազիս
Գանձը՝ ինչպէս հըրամայեց ալ Աստուած

Եւ դուն, սիրուա՛ծ, սիրէ կամ մի սիրեր զիս ։

ԽԳ

# ՎԵՐՅՈՒՇՈՒՄ

—

Եղէգներուն տատանումէն կազմեցի
Աղօտափայլ ապակիին վրայ մտքիս,
Իրենց շարքովը պզտիկի եւ մեծի,
Ոմանք շիտակ եւ այլք հակած զերգ Նարկիս,

Ամենքն աղուոր՝ հասակներուն մոռցըւած
Փայփայուած գիծն ապակիին վրայ մտքիս՝
Որուն ետեւ արեւին լոյսը առկայծ
Կ'ոգեւորէ — հազիւ — ուղին անցեալիս։

Ո՛վ Երազը վերադարձին այն ճամբէն
Անոնց մէկուն որոնք տեսայ հիաձիգ
Նայուածքովը տարիներուս վաղանցիկ...։

Ո՛վ աննըւաճ սիրելու յոյսը նորէն
Երբ ամէն օր քիչ մ'աւելի կը մթնէ
Հոգիիս ցուրտ ջերմանոցին մէջ դժնէ...։

## ԻԹ

## ԿԱՆԹԵՂ

—

*Իմ սրտիս մէջ՝ բիւրեղ կանդեղ՝*
*Նըշուշեցաւ բոցը սիրոյդ*
*Եւ կանդեղին մէջ, իւղի տեղ,*
*Հոսեցուցի կեանքըս, պուտ պուտ։*

*Հոն՝ խորանին մէջ հոգիիս՝*
*Ժամանակէ մ՚ի վեր անյուշ,*
*Գամուած է քու, ո՛վ պաշտելիս,*
*Քու ոսկեզիծ պատկերդ անուշ։*

*Այդ պատկերին առջեւ անհա*
*Որ հրեշտակի մ՚ունի անուն,*
*Սիրոյս կանթեղը կը մըխայ*
*Բոցով մը փոքր ու ճլպլուն*

* * *

*Իմ մարմինիս թաց ըսպունքէն*
*Քամուած կեանքը երբոր ցամքի*
*Սիրոյս կանթեղն ալ այն ատեն,*
*Լոկ այն ատեն մարի՛ պիտի։*

*1893*

Digitized by Google

ԻԶ

# ԱՆՁՐԵՒ

—

Ինչպէս եղբայր մ'որ իր եղբայրին չէ տեսեր
Տատոնց ի վեր՝ անձրեւն իջաւ հողին վրայ
Եւ համբոյրին շառաչը մեծ լսեցայ...
Նախանձով քաղցր լեցուեցաւ սիրտըս անսէր

Ծաղիկներուն նայելով վրայ որոնք վեր
Բարձրացուցին իրենց ցօղերը հիմա...։
Իմ չըհոսած արցունքներուս խորհեցայ
Եւ աչքերուն՝ ծովեր լոյսի եւ ծովեր

Անուշութեանց ուրկէ կաթիլ մը անգամ
Չըհոսեցաւ իմ ծառացած ծարաւիս
Վըրայ...։ Հիմա, ո՜վ մեծ պատկը ցաւիս

Եւ խնդութեանս, նորէն քեզի, տե՛ս, կուգամ
Պատըսպարուիլ՝ անցորդ՝ դըրանըդ ներքեւ
Երբ կը թրջէ զիս ձանձրոյթին սեւ անձրեւ...։

Digitized by Google

ԺԷ

## ՈՒԽՏ ՄԸ

Իմ պարտէզիս մէջ ճերմակ պատերով,
Փոթորիկի խիստ օրէ մը յետոյ
Ուխտ մը տնկեցի Անպահանջ Սիրոյ,
Դողացող երկար իր նուրբ ցօղունով։

Եւ ոռոգեցի զայն ջերմ արցունքով.
Ամեն առաւօտ, ամեն երեկոյ
Հակեցայ ծաղկանցն իր վրայ անգոյ,
Եւ շատ գիշերներ լուսցուցի իր քով...։

Գիշեր մը, լուսնէն Երազ մը իջաւ
Եւ, հովահրելով, իմ աչուըներուս
Չորցուց արցունքը. Նայուածքըս կորոյս

Արթնութիւնը իր եւ երբոր ամբաւ
Ժպտով մ'արթնցայ... Ուխտըս չորցած էր.
Սեւ ու ճարճատուն՝ ինչպէս ճիւղ մը ծեր...։

Digitized by Google

ԻԲ

# ՄԱՀՍ

—

Մարդուն Ցոյսերն եւ Բաղձանքներն, սեւերու
Փոխադարձ Տենչն, Սպառումներն անուրջի
Մը հասնելու, Նախանձը որ կը զեռու
Խորը սրտին, Երազը որ կը թռչի

Արծուի թեւով եւ ամէն ինչ որ ուժգին
Անսասան ունի մարդը իր մէջ՝ սլանալով
Կ'ուզէի որ միջոցին մէջ կազմէին
Մրրիկ մ'անզուսպ, պըտուտքելով, գոռալով...։

Անոնց մէջտեղ ես՝ փետուրէ մ'աւելի
Թեթեւ... ամէն մէկ մասնիկովս ատելի,
Հիւանդ մարմնոյս դողդըղալով... մատնըւած

Կիկլոնէ այդ վերելակին ահաւոր...
Ամենազօր ուժերու մէջ խեղճ, անզօր...
Պիտ՝ ուզէի ելլել չիտակ առ Աստուած...։



Նախանձօրէն պիտի պատկերըդ պահեմ
Աչքիս ետեւ, յիշատակիս մէջը խոր...
Բոցեր եկան չրթունքիս վրայ, դէմքիդ դէմ,
Եւ ես չըսի ո՛չ հիացումս, ո՛չ ալ բերած ինձ անոր՛

Ուրախութիւնն ես պղծեցի մէկուն հետ...
Հոգիիս մէջ ես քաղցրօրէն կրկնեցի
Թէ դուն աղուոր, աղուո՛ր էիր 'ւ ետեւէդ
Երբ մեկնեցար, երկար ու լուռ դիտեցի...։

Հոգիս այնպէս զարկը կրեց շնորհքիդ,
Այնպէս քաղցր է յիշել աչքերըդ վըճիտ՝
Որ չըկրցաւ Տենչանքը զիս խըռովել...։

Ետքէն, Թերեւս, պիտի տակաւ առ տակաւ
Քեզ մտքիս մէջ հանուեցընեմ եւ խոնաւ՝
Պիտի գոցեմ աչքերս Բաւղին մէջ անել...։





## ՆԱԽԱԿԱՏԻՔ

Այս գիշեր թող որ դեռ վըրադ մըտածեմ
Քիչ մը վախով, խորհուրդով եւ յոյսով դեռ.
Թո՛ղ երազեմ բաներ անուշ եւ վըսեմ
Քու բերնիդ մէջ՝ ծաղիկ 'ւ աչքիդ ալ՝ եթեր։

Այս գիշեր թո՛ղ իմ Տենչանքիս հարսի պէս
Շըւարելով սըպրդիլ ներս քու խուցէդ.
Քընացընող երգեր երգել եւ անտես՝
Սընարիդ շուրջ սրբավառել խունկ ու ձէթ....։

Քեզի համար տեղ կը շինեմ բարձիս վրայ,
Գըգուանքներով կը լեցուի ձեռքս այս գիշեր....։
Ինչպէս առիւծ մ'որ կը թօթուէ իր բաշեր

Արիւնիս մէջ դող մ'հեշտութեան կը սուրայ....։
Այս գիշեր թո՛ղ որ հոսի սէրըս անխառն,
Վաղը մատնիչ, վաղը ընկճող է եւ դառն....։

## ԼԱ

Տիղմէն յետոյ տենչը վարդի մը ճերմակ…
Խաղ մը պարզուկ մանուկներու հետ անմեղ,
Վէպեր պատմել անոնց պարզ ու լուսաղեղ
Եւ փընտըռել ժամանակ առ ժամանակ

Անոնց աչքին մէջ Զարմանքին, Շըլացման
Եւ Զայրոյթին բացատաններն երկնային…։
Օ՛հ, տըղաքներն միայն ինծի կրնային
Պիտի մեղմիւ առաջնորդել եւ գալ ման

Պարտէզին մէջ Երջանկութեան ինծի հետ,
Իմ չըճանչցած պարտէզներըս ծաղկաւէտ,
Թուփերը ցած որոնք սիրովըս վըճիտ

Առտու իրկուն յօժարակամ ջըրէի,
Թարմ բայց պզտիկ միշտ պահէի ես պիտի…
Չըսպասելով, Ցագո՛ւրդ, փըտած պըտուղիդ։

ԼԲ

# ԵՐԱԶ

Այս գիշեր ըզքեզ ես երազեցի
Եւ կը փնտըռեմ այսօր ամէն տեղ
Մազերըդ՝ խաւար, նայուածքըդ՝ կանթեղ,
Ակռաներդ՝ մարգրիտ, ականջըդ՝ խեցի…։

Այս գիշեր ըզքեզ ես երազեցի
Եւ բերնիս վըրայ շրթունքիդ հիւթեղ
Վերադարձաւ համն ու դողաց այնտեղ։
Քայլերուդ առջեւ լայնօրէն բացի

Ժանգոտած հոգիս եւ եկար, անգէ՛տ,
Ճամբորդութենէ մը ինչպէս երկար
Բազուկներուս մէջ՝ որբ քու մարմինէդ…

Օ՜հ, նստէ հիմա եւ ա՛լ մի երթար.
Հիմա՛, մեղքըցիր եւ եթէ կրնաս
Զիս քիչ մը սիրէ՛, ո՛վ բարի տըղաս…։

Digitized by Google




# ԾՈՎԵԶԵՐՔԻՆ ՎՐԱՅ

Ծովեզերքին վըրայ, գիշերն փրկարար
Փրցուց սրտէս կեղեւն օրուան կեղծիքին
Եւ ծովին դէմ որ օրըրուելով կը քնանար
Հոսեցաւ յորդ երկու ձեռքիս մէջ վէրքս հին։

Այսպէս հանդարտ ափունքի մը ես դարձայ
Ուր անօգուտ նուիրումէ մը յետոյ
Զգացումիս խարտեաշ խունկին նորընծայ
Քու գոց դըրանդ, գոց փեղկերուդ առջեւ՝ գոհ,

Կը տանէի անոր աճիւնն քաղցրահոտ
Ցանձնել ծովին գգուանքներուն մայրագութ...
Ալիքը յամր ու թափանցիկ ու վախկոտ
Կ'ուռենայ եւ մըտածելով աչքերուդ

Կը փըսորի, աւազին վրայ կը պառկի ...։
Քու մանկական երեսներուդ կը խորհիմ,
Ամուր ձայնիդ եւ անվրդով, չեշտակի
Հոգիս իջնող քու նայուածքիդ մըտերիմ...։

Զի մըտերիմ եղայ քեզի, մենութեան
Երազալոյս եւ երջանիկ օրերուն
Ու կը գըկեմ հիմա իմ մէջս, յաւիտեան
Պիտի գրկեմ հոգիդ անհուն՝ օրօրուն

Digitized by Google

Ծովին դիմաց՝ մերթ լացող եւ մերթ ժպտող…։
Լուրթ երկնքին վըրայ անամպ, անլուսին՝
Սիրողներու ինչպէս ճամբայ մ՛երկնցող՝
Ծիր-կաթինին կը դողդղայ լոյս ուղին։

Ո՛հ, քու ճամբադ, իմ պզտիկ անձս հոն անհետ,
Ճամբուն եզերքը մոռցըւած զերդ թաղար,
Մինակ ու գոհ, սիրովըդ լոկ խնկաւէտ
Եւ բուրելով մեղմիւ, այնչափ գաղտնաբար

Որ իր բուրումը օ՛ր մը քեզ չըհասաւ.
Դուն կ՛անցնէիր եւ առանձին մընացած՝
Կը լեցուէի տրտմութիւնով մը ամբաւ,
Կը կանչէի, կը խօսէի քեզի ցած

Քու շընորհքիդ եւ քու կեանքիդ վըրայ ալ…։
Եւ սուզուեցաւ, ինչպէս լուսինն երկնքին
Գիշերային հոսանքին մէջ կաթնահալ
Իմ Սէրըս մեծ. խաւար մ՛իջաւ ցաւադին

Հոգիիս մէջ եւ գիշերուան մէջ ինչպէս
Լուռ ու անվերջ ծովեզերքի մը վըրայ,
Թափառեցայ ես միս մինակ, որբի պէս,
Մտրակուելով ցուրտ հովերէն անխընայ։



ԼԳ

# ԻՆՔԶԻՆՔԻՍ

—

*Արցունքն աչքերուդ չի վայլեր. մի՛ լար.*
*Անհուն չէ ցաւըդ զոր ըստեղծեցիր,*
*Զոր կը նըւագես. քընարըդ մէկ լար,*
*Մէկ չեշտ ունի զոր զարկեր անձանձիր։*

*Հիմա, երեսիդ դիմակն անթափանց*
*Պիտի պահես միշտ. պիտի խնդաս մերթ*
*Եւ յաճախ խորհիս՝ ցաւիդ վրայ անանց.*
*Պիտի տրտմիս բայց չըսրբես աչքերդ։*

*Արցունքին տրուած չէ քեզի ըզգալ*
*Բարութիւնը լուռ եւ ըսփոփարար։*
*Զըկրնար վըրադ իջնել մեղմաբար*

*Ցիչատակին նուրբ ցաւը սրտակալ։*
*Կսկիծը ծաղիկ մըն է որ բըննաւ*
*Սէրիդ պարտէզին մէջը չըբուսաւ....։*



## ԼԵ

## ՏՆԳՈՒՄ

Ե՛ս կայսրութիւնն եմ անկումին դէպի վերջ
Որ սպիտակ դուժիկններուն ետեւէն
Կը նայի եւ կը շարագրէ տաղեր պերճ,
Ոսկի ոճով, ուր արեւներ կը պարեն։

Մենիկ հոգին դալուկ կըզգայ ձանձրոյթով։
Կ'ըսեն թ'հեռուն ահեղ մարտեր կը մղուին ...
Օ՛հ, այսքան թոյլ եւ այսքան յամր իղձերով
Չըկրնա՛լ հոն ծաղկափթթել կեանքըդ սին։

Օ՛հ, չըկրնալ, չըտենչա՛լ քիչ մը մեռնիլ...
Խըմեցին եւ — Դեռ կը խնդա՞ս դուն, Պաթիլ, —
Կերան ամէն ինչ. ըսելու բան չըմնաց։

Միայն, քերթուած մը քիչ մ'ապուշ զոր կ'այրես,
Միայն, ըստրուկ մը քիչ մը ցոփ լըքող քեզ,
Միայն, կառչող սրտիդ ձանձրոյթ մ'անիմաց... ։

ԲՕԼ ՎԷՐԼԷՆ

## ԱՁ

## ՀՆՉԵԱԿ

Բան մը չունիմ զինքը ինծի յիշեցնող
Ոչ լուսանկար, ո՛չ ալ փունջ մը մազերէն։
Գըրութենէն չունիմ ոչ իսկ երկու տող.
Ահ,՝ մէկըզմէկ մենք կ'ատէինք դառնօրէն։

Նա կոյս էր միանգամայն եւ նաւաղկոտ.
Ան բոցի պէս վառվըռուն էր ու դաժան։
Ո՛վ տարաբաղդ մարդու մը սէրը հեւքոտ
Սիրուհւոյ մը սրտին վըրայ անարժան։

Եւ ահա օր մ'ալ թողուցինք մենք իրար
Երջանկութեան օրերէ ետք անհամար,
Համբոյրներէն յետոյ ու բիւր լացերէն,

Ջերդ դէմ առ դէմ կեցած երկու ոսոխներ
Որոնց ոխը ա՛լ զիրենք հըզօրացներ
Եւ կը թողուն սուրերն իյնալ ձեռքերնէն...։

ՀԱՆՐԻ ՊԷԹԹ

# ԱՐՁԱԿ ՔԵՐԹՈՒԱԾՆԵՐ

Զիս չարչարեցին, դաշույն տուին սրտիս
Ոմանք իրենց սիրով, այլք ատելութեամբ։

Թունաւորեցին իմ հացս ու գինիս՝
Ոմանք իրենց սիրով, այլք ատելութեամբ։

Սակայն ա՛ն որ զիս էն շատ չարչարեց
Եւ ամենէն շատ սիրտս դառնացուց,
—Ան զիս ոչ սիրեց եւ ոչ ալ ատեց։

ՀԱՆՐ. ՀԱՅՆԷ



Digitized by Google

# ԽՊՆԱԾ ՍԷՐ

Իմ սէրս ջինջ առուակ մըն է որ յուշիկ կը հոսի խոտերուն տակէն, ընդարձակ դաշտին մէջ։

Այնչափ յուշիկ որ ոչ իսկ իր դղչիւնը կը լսուի եւ դո՛ւն որ քանի մը քայլ անդին կը պտտիս՝ անոր գոյութիւնը չես գիտեր։

Կը տենչամ որ աղու թեթեւ քայլերդ պատահմամբ անոր մօտը բերեն քեզ եւ անոր պայծառ ջուրերուն մէջ յանկարծ սրունքներդ թրջէին՝ քանի որ անիկա, բնութենէն իր ճամբան գծուած, չպիտի կրնայ գալ ու քու ոտքերդ համբուրել։

# ՀՈՎԻՒԻՆ ԻՂՁԸ

---

Եղնիկի խոշոր աչքերով, սեւ գանգուր մազերով աղջիկը երկու ձեռքերովը հրեց բարձրացող ու իրեն մօտեցող կուրծքը հովիւ պատանիին ու դաշտին մէջ փախաւ, իր ետեւ բիւրեղէ ծիծաղ մը ձգելով օդին մէջ։

Կաղնեհասակ, կարմրերես հովիւը՝ հիասթափ՝ թողուց որ ուսին վրայէն իյնայ մորթը՝ որ իր նախկին ոչխարներէն մէկունն էր։ Մացառներուն ետին կորսնցնելէ վերջ աղջկան տեսքը, յամրօրէն վար նստաւ, կռնակը՝ կաղամախիին բունին։

Ծոցէն քաշեց հանեց սրինգը, այրող շրթունքը սիրողաբար փակցուց անոր բերնին ու մատները դանդաղօրէն ծակոտ իրանին վրայ շարժելով՝ նուագել սկսաւ։

Պատանիի լայն կուրծքը այնպէս կ'ելեւէջէր որ կարծես ձայները ուղղակի սրտէն կը խլէր եւ սրինգին մէջ կը փչէր։ Հրկիզուող ծառի մը ճարճատիւնը եւ հմայուած թռչունի մը գեղգեղը կար հոն։

Digitized by Google

Դէմը, ոչխարները կ'արածուէին. գառնուկները, իր ձեռքին տակ, կը ցատկըռտէին։ Իրիկունը, մրափող արտեւանունքի մը պէս, յամրօրէն կը գոցուէր։

Ցանկարծ, հօտին վէտիվէտ ճերմակին մէջէն, նշմարեց ձիւնի պէս սպիտակ ու շողշողուն մարմին մը որ դէպի իրեն կը յառաջանար։

Գառնուկներու Պահապան Ոգին ապշած հովիւին դէմ եկաւ կեցաւ.

— Քու սրինգդ հեշտացուց զիս, հովի՛ւ, ըսաւ, ու եկայ քեզի շնորհք մը ընելու։ Հուրիները ամբողջ իմ քոյրերս են. կուզե՞ս որ զքեզ քովը տանէին այն աղջկան որ վիշտ կուտայ սրտիդ։

— Այն աղջիկը հեռուն, լեռներուն մէջ կը բնակի ուր ես իմ հօտերս չեմ կրնար տանիլ եւ անիկա, աւա՛ղ, շատ քիչ վար կ'իջնէ անոնցմէ...։ Տո՛ւր ինծի, հառաչեց վայրկեան մը մտածելէ ետք պատանի հովիւը, որ գիշերները, աստղերուն տակ մրափիս մէջ երբոր ես զինք կ'երազեմ, նոյն վայրկեանին իր լեռներուն մէջ քնացող ծաղկի շունչով աղջիկն ալ զի՛ս տեսնէ։ Տո՛ւր որ քունիս մէջ երբոր տենդոտ շրթունքներով կը համբուրեմ իր երեսները՝ համբոյրիս խտղղտումէն ա՛ն իր բարձին վրայ սարսռալով արթննայ...։

Digitized by Google

# ԳԻՇԵՐԸ

Երբոր երկրի վրայ Գիշերը կը ծաղկի՝ իր սեւ թաւիշէ անսահման թերթերով որոնց Գգուանքներ եւ Երազներ կը պահուըտին գոգին մէջ, ծաղիկ՝ որուն դեղին առէջները երկնքին կը դպին եւ կը սարսռան այդ բարձրութեանց մէջ անցնող զեփիւռներուն շունչէն,

Այդ պահուն ճիշդ հոգիս կ՚իջնէ իր փըղոսկրէ աշտարակէն եւ յամրօրէն կը սահի ճամբաներէ որոնք ինք բացաւ եւ ինք միայն կը ճանչնայ, հետապնդելով երազ մը զոր ըստեղծեց եւ որ խոյս կուտայ այդ պահուն իր առջեւէն։

Ո՛վ անուշ ճամբորդութիւնը անլուսին գիշեր մը քնացողներուն ներդաշնակ շունչին մէջէն եւ մեռելներուն վըսեմ անշարժութեանը վրայէն

— Քանզի հազարաւորներ Մահը քարացուց այս գիշեր —

Ո՛վ գերբնական վայելքը հոգիիս՝ առանձին եւ բազմաթեւ, բնութեան մէջը հալած՝ մինչեւ այն վայրկեանն ուր արեւին փայլուն մանգաղը կուգայ իր ցօղունէն հընձել Գիշերուան սեւ ծաղիկը որ կ՚իյնայ նորէն, երկրի անդունդներուն խորը։

Digitized by Google

# ՋՈՒԹԱԿԸ

—

Լ. Առաքելեանին

«Եկո՛ւր, ըսի ատենով մեկուն՝ որուն մարմինը հրաշալի ներդաշնակութիւնն էր ամբողջ եւ որուն նուրբ ու յղկուած մատները միայն տեսնելով՝ կը զգայիր որ երաժշտութեան հոսանքներ կ'իջնեն անոնցմէ, եկո՛ւր, սա ջութակին վրայ զոր սենեակիս անխոյզ մէկ անկիւնէն երեւան հանեցի, դո՛ւն նուագէ ու ես երգեմ ամէն Երգերուն Երգը։ Եկուր քեզի հետ Սէրը զուգերգենք։

Վայրկեան մը աչքերուս մէջ նայեցաւ ու ես, աչքերուն մէջէն, տեսայ որ սիրտը կը գոցուէր ինծի դէմ։

* * *

Տարիներ, տարինե՛ր անցան։ Ջութակը հոն նետեցի ուրկէ գտած էի, թելերը՝ փրթած եւ կուրծքը՝ ճաթած։

Digitized by Google

Գոցեցի խուցիս դուռը ու փակուեցայ հոն, քանի մը չըսպասելով, ա՛լ քանի մը չը կրնալով սպասել, որովհետեւ ան զոր յուսացած էի, որուն տենչացած էի հոգիիս ամբողջ ուժովը՝ եկած էր ու անցած, ծանր հիւանդութեան մը պէս որ մարմնին անդամները կը թուլցնէ եւ կոկորդին մէջ ձայնը կը չորցնէ։

. . . Ան ինչպէ՞ս ներս մտաւ գոց սենեակէս։ Լոյսի ու բուրման ծածանք մը զգացի չուրջս ու սենեակին խտացած լռութեանը մէջ, անոր մէկ անկիւնէն մեղմօրէն բարձրացաւ ջութակի մը ձայնը զոր ատենով լսած ըլլալ կարծեցի։ Մարմինս կը ցնցուէր, կարծես հարիւրաւոր գնդասեղներու հարուածին տակ։ Ցանկարծ արտեւանունքս թօթուըւեցան ու տեսայ իմ հին, փոշեպատ նուագարանս ուսին ծայրը կրթնած մէկու մը՝ որ ա՛ն չէր։

Դիմացս ընկողմանած, բազուկին յամր երերումներովը, ասիկա լացնել կուտար եղանակ մը զոր ատենով ես ուրիշի մը հետ երգել ուզած էի։

Եղանակը, սակայն, կ'ոգեւորէր զիս ու անոր խազերը

որ չուրջս կը ծփային, կ'օրօրուէին՝ հեռաւոր պատկերներ ցոլացնելով իրենց վրայ՝ քիչ քիչ անտես ըրին անծանօթը որ դիմացս ընկողմանած, միշտ կը նուագէր հրաշալի եղանակը ....։

Յանկարծ մշուշի մը մէջէն հեռուէն հոգիիս առջեւ շողացին այն հին, շատ ծանօթ աչքերը որոնք երբեմն գտնել տուած էին ինծի թաքուն ջութակը... Աչքերուն՝ դէմքին շըրջագիծը կը միանար, թափանցիկ մորթ մը անոր վրայ կ'անցնէր՝ սեւ մազերու լքուած առատութեան մը ներքեւ։ Շուշանի հասակ մը որուն արմատը օդին մէջ կը հալէր՝ կը զօդուէր այդ դէմքին։ Նայուածքը որ երակներուս մէջ կը հոսէր՝ «Եկո՛ւր» կ'ըսէր ինծի....։

Երկարօրէն նայեցայ անոր, սիրտս յաջորդաբար սեղմուելով ու լայննալով։ Ամբողջ տառապանքի օրերը յիշեցի, մաշեցնող կարօտը այդ նայուածքին որ զիս կը դիտէր հիմա, այն տենչանքը զոր ունեցած էի՝ առանց իրեն խօսելու, առանց մատս մարմնին դպցնելու, ժամերով, օրերով միայն իր երեսը նայելու։ Յետոյ, յիշեցի աւելի բուռն վայրկեաններուն զիս տոչորող բոցը՝ անդամ

մը ձեռքը բռնելու, անգամ մը կուրծքիս վրայ քաշելով՝ մազերուն մէջ, ճակտին վրայ զինքը համբուրելու...

... Սուգի քօղը զոր հագած էր սիրտս բզիկ բզիկ վար ինկաւ։ Անհուն գորովով մը եւ ա՛լ առանց ցաւի նայեցայ միջոցին մէջ երերացող հասակին. անոր դպչելու փափաքը ձեռքերս կ'այրէր... Ոտքի ելայ, հազիւ երկու քայլ առի եւ ցնդեցաւ հինին տեսիլքը։ Ինքզինքս գտայ ծունգերուն քով ասոր, այս նորեկին որ կուրծքին վրայ սեղմած լքուած ջութակը, ճպոտին ճարտար շարժումներովը կը նուագէր միշտ հին աղուոր եղանակը։



Digitized by Google

# ԵՐԱԶԻ ՀԱՄԲՈՅՐ

Երբեք այսքան երջանիկ եղած չէի, ոչ երազի մէջ ոչ արթնութեան։

Հիմա շրթունքներս մեղրազօծ կը թուին ու ձեռքիս վրայ կը փակցնեմ բերանս, աւելի զուտ ու որոշ զգալու համար հոն թրթռացող նուրբ հեշտութիւնը։

Չէի տեսած զայն առաջ, բայց աղուոր էր, երիտասարդ ու ժպտուն եւ անկիւն մը գտայ զինք ու բնականօրէն, զինք համբուրել ուզեցի։

Պահ մը դիմադրեց ինծի. փախցուց բերանը իմ հետապնդող շրթունքներէս, ժպտելով, խնդալով, գլուխի ու իրանի անհամար շարժումներով։

Բայց վերջապէս բերանս գտաւ իր բերանը, ինկաւ անոր վրայ եւ անհաշիւ ծծեց զայն՝ ծաղիկի մը պէս՝ գինով, յիմար ու նեկտարուած անով։

Երբոր արթնցայ, երջանիկ էի, ինչպէս երբեք երջանիկ եղած չեմ ոչ երազի մէջ, ոչ արթնութեան։

Digitized by Google

Ի՛նչ փոյթ որ ցերեկները անհամ ու տրտում անցնին եթէ գիշերը պիտի յորդի սիրտս համբոյրի մը մէջ, առանձին բարձիս վրայ։

Առտուն զովացած պիտի արթննամ շրթունքներս ու աչքերուս ետին պիտի մնայ տեսիլքը ժպիտին։

Օ՛հ, երեւցի՛ր երազիս մէջ ամէն գիշեր, անծանօթ էակ, ու դիմադրէ համբոյրներուս։

Ամէն գիշեր իջի՛ր քու կապոյտ մթնոլորտէդ իմ մենութիւնս ծաղկեցնելու։

Եւ այդպէս անգամ մը, իմ հեշտութեանս միջոցին, զիս քեզի հետ տար քու կապոյտ մթնոլորտդ, անծանօթ էակ։



Digitized by Google

# ԾՈՎԵԶԵՐՔԻՆ ՎՐԱՅ

—

Ամայի, երկար դաշտ մըն է ծովեզերքը։ Թարմ ու դալար խոտերուն մէջէն ցցուած մամռապատ ժայռեր, արեւին տակ, կարծես կը խոկան Ձանձրոյթը իրենց անփոփոխ կեանքին...

Ծովեզերքին վրայ հարթ աւազ մը կը փռուի։ Մամռապատ ժայռերուն մէջտեղ, խրճիթ մը՝ խոռոչանման մերկ պատուհաններով՝ ժայռէ գերեզմանաքարերու մէջ հողէն դուրս ելած գանկի մը պէս՝ կը խոկայ Ոչնչութիւնը կեանքին...

Եղրեւանիի բարակ ծառ մը տունին երեսը կը պատատէ։ Պատուհաններէն մէկուն մէջ աղջիկ մըն է նստեր, ձեռքը ծնօտին ու կուրծքը բաց, մի՛ս մինակ հորիզոնին գիրկընդխառնումին դիմաց, կը խոկայ Առանձնութիւնն իր կեանքին....։

# ԵՐԻՑՈՒԿՆԵՐ

—

Անցեալ տարի այս ատեն՝ գարունին, իրիկուններըը դաշտին մէջ կը պտտէի, հոգիս լայնցած յուզումով եւ շնչելով թարմ օդը որ կարծես մարգագետիններուն կանանչէն կը բարձրանար։

Մեծ երիցուկներուն պէս որոնք կանանչին մէջ իրենց ճերմակ ժպիտը կը բանային, այդ պահուն նոր աչեր մը կը բացուէր սրտիս մէջ։

Սիրուած հասակը կ՚անցնէր հեռուէն եւ ես վախով, աւելի ցած կը մրմնջէի իմ երգս՝ չլսուելու համար անկէ։ Կ՚ուզէի որ հեռուէն, ան տեսնէր շրթունքներուս շարժումը ու գաղտնի սիրէ՛ր զիս։

Եթէ արդէն կը սիրէ՛ր զիս...։ Խեղճ ճերմակ երիցուկներ որոնք զոհ կուտայի իմ սիրոյս։ Կը զղջամ այն բարկութեան համար որով կը նետէի ձեզ երբոր «Երբե՛ք» կը յայտնէիք։

Բայց գուրգուրանքով կը յիշեմ այն հաճոյքը զոր կ'առթէիք ինծի, երբ վերջին թերթը ձեռքիս մէջ չրթանցս վրայ կը մեռար «Խենդի՛ պէս»...։

Խենդի պէս ես սիրեցի զինք. ան Երբեքով մը փեթըռտեց սիրտս՝ խե՛ղճ ճերմակ Երիցուկ։

---

## ԳԻՒՏ

Քեզ սիրելէս ի վեր ամէն օր նոր գիւտ մը կ'ընեմ։

Գիտէ՞ր թէ ինչու քեզ կը սիրեմ։ — Անոր համար չէ՛ որ ամենէն գեղեցիկն ես, այլ անոր համար որ քու գեղեցկութիւնդ ես ամենէն աւելի կը սիրեմ։

Եւ քու գեղեցկութիւնդ ամենէն աւելի կը սիրեմ այն օրէն ի վեր ուր տեսայ քեզ։

---

Digitized by Google

# ՄԱՆԻՇԱԿԸ

*Մ. Միհրդատեանցին*

*Ես կը սիրեմ չնչել Մանիշակը, իր տերեւներուն նախանձոտ թաքստոցին մէջ, հողին վրայ ամբողջ հասակովս իր մօտը պառկած։*

*Գարնան առտուներ, այդպէս, ծծելով իր թաւշոտ բուրումը, մտերմացայ իրեն՝ առագաստին խորը քաշուած պզտիկ, համեստ հարսին։*

*Եւ քիչ քիչ ան ինծի բացաւ իր հոգին, բուրումնաւէտ անգայտ հոգին զոր իր պզտիկ բաժակին մէջ դժուարաւ կը սեղմեցնէր։*

*Ըսաւ ինծի թէ ինչպէս առեն մը ինքն ալ, ամէն ծաղիկներուն պէս հողէն վեր գլուխը կը բարձրացնէր, արեւին տակ իր գեղեցկութիւնը շողացնելու։*

*Ինչպէս, չեփորուկին նման, իր տերեւներն ալ պատերուն վրայ ասեղնագործութիւններ կը հիւսէին եւ անոնց մէջտեղ իր ծաղիկները, արուեստով զետեղուած ուլունքներու պէս կը պսպղային։*

*«Բայց, հծծեց, օր մը այն պատերուն մէջ իշխանուհի մը բնակելու եկաւ, արեւին պէս լուսաւոր եւ նազելաքայլ։*

«Իր նաժիշտները, ամէն առաւօտ, պսակ կը հիւսէին վարդերէն ու քրքումներէն, մեխակներէն եւ շահոքրամներէն ու կը բերէին ճերմակ իշխանուհւոյն գիրկը դնել։

«Իմ բարձունքէս նախանձով կը տեսնէի քոյր ծաղիկներուն երջանկութիւնը եւ իջնելու, խոնարհելու պէտքէն գրաւուեցայ։

«Աստիճան առ աստիճան սահեցայ պատերէն վար. տերեւներս հետզհետէ խտացան եւ ես ծածկուեցայ անոնց մէջ, չտեսնելու համար անկումս։

«Ինկա՛յ հողին վրայ, անբոյր գաճաճ խոտերուն քով ու անոնց հաւասար արմատներս նետեցի։

«Եւ առտու մը, ծածանուն ճերմակ պարեգօտով իշխանուհին, իր դանդաղ հեշտական պտոյտին մէջ, զիս իր թեթեւ ոտքերուն տակ մեղմօրէն կոխոտեց՝ մինչ ես, այդ զգուանքին փոխարէն, իմ հոգիս կուտայի։

«Առտուան զովութեան մէջ, իշխանուհին, զարմացած, ծծեց իմ անծանօթ բուրումս եւ աչուըները թաղուեցան անուրջին խորը։

«Այդպէս ես իմ երազս գրկեցի, երջանիկ ու գոհ մութին մէջէն ծաւալեցնելուս սիրոյ խունկը որ կը հեշտացնէր վերը, լոյսին մէջ շարժող էակը . . .»

# ՄՈՒԹԻՆ ՄԷՋ



Երբոր խրիկուան մութը կ՚իջնէ վար երկնքէն, քեզի կը դառնայ մտածումս եւ այն ատենն է որ գեղեցկութիւնդ աւելի ժպտուն, աւելի մերձենալի կը դառնայ։

Որպէս զի ժպիտդ իր գողտր տարածութեամբ լուսասաւորէ ամբողջ դէմքդ, մութին մեղսակից շրջանակումը պէտք է։

Մութին մէջ լոյս ծաղիկներ կը ցանէ քալուածքդ եւ կը հետեւիմ ծաղկի ցօղունի մը պէս ճկուն քու հասակիդ։

Ու երբոր դիպուածով ետիդ կը դառնաս, մութին մէջ մոռցուած անլոյս աշտանակ՝ կը բռնկիմ յանկարծ բոցովը նայուածքիդ։



# ԱՍՈՒՊՆԵՐ

—

Աշխարհներ են, իրենց ճամբէն շեղած։

Շղթայէն անջատուած օղակներ որոնք հոս ու հոն կը գլտորին։

Աշխարհներ էին որոնց քաղաքները մէյմէկ Սոդոմ ու Գոմորներ դարձան։

Ու անոնց մեղքին համար Աստուած պատժեց զանոնք. Իր շունչը չփչեց ալ անոնց վրայ, իր մատին մղումը զլացաւ անոնց եւ դուրս ինկան ներդաշնակ գնացքէն։

Միջոցին մէջ բարձրացած էին անգիտակից քարշողութենէ մը եւ ահա կը գահավիժին, խաղալիկ ուրիշ զօրութեան մը։

... Գլխու պտոյտէ բռնուած աշխարհներ, ինկէ՛ք, ինկէ՛ք մութ երկնքին մէջ։

Գահազուրկ արքաներ, գլուխնիդ վար, նետուեցէ՛ք, նետուեցէ՛ք ծովին մէջ։

Գինով աղջիկներ, խնդալով, վազեցէք, վազեցէ՛ք մայթին վրայ։

Թեթե՛ւ փոսուռայներ, սահեցէ՛ք, սահեցէ՛ք խաւարին ծառերուն մէջէն ...։

Digitized by Google

# ՋՂՋՈՒՄ

Ա. Ի. ին

Գարնան վերջալոյսի մը, երբ իրիկունը քիչ մը ցուրտ կ'ընէ դեռ, պարտէզիս վարի ծայրը, հոն ուրկէ նայուածքը բլուրներու կանանչ, կակուղ կուշտին վրայ կը փռուի եւ կը թաղուի ծմակներուն թաւշոտ ստուերին մէջ, պարտէզիս ամենէն վարի ծայրը, մանիշակներու մէկ քանի խիտ թուփերու քով, գացի սպասել անոր, որ առաջին անգամ կեանքիս մէջ, գիտէի թէ պիտի գար։ Եւ եկաւ, իրօք, անմիջապէս։ Պարտէզին վերնայարկէն, վարդենիներուն մէջէն կարծես, հասակը յանկարծ բաժնուեցաւ ու եղանակաւոր ու լուրջ ու տրտում քալուածքովը դէպի ինծի դիմեց։ Երբոր զինք ճանչցայ, բնազդօրէն ձեռքս կուրծքիս տարի ու վախով դէպի յառաջ երկարեցի, կարծես անոր արգիլելու համար մօտենալ։ Բայց ան, չտեսաւ շարժումս եւ անձայն եկաւ, միւս ծայրը նստարանին ուր ես նստած էի, եկաւ բազմիլ ինչպէս ծառէն բաժնուած ծաղկի ճերմակ թերթ մը։

Digitized by Google

Նայեցայ իրեն, աչքերուն մէջ որոնք վրաս կը դարձընէր այնչափ բարութեամբ որքան երբեք տեսած չէի աշխարհի մէջ։ Ըսել կ'ուզէր, իր նայուածքը. «Կանչեցիր ու եկայ ահա։ Ինչո՞ւ կանչեցիր — չեմ գիտեր. բայց կը կարծեմ ճանչնալ քեզ եւ հին ծանօթ մը տեսնել հաճոյք է ինծի։ Կը զգամ որ ինծի չարիք չես կրնար ուզել. ընդհակառակը, որքա՛ն գորով կը ճառագայթեն աչքերդ։ Այս վերջալոյսը կը սիրեմ ես, այս վերջալոյսը որ հովիտները ու բլուրները կը կենդանացնէ։ Վերջալո՞յս թէ արշալոյս. ինծի կը թուի թէ նոր լոյս մը կը ծագի մեր մէջտեղը, մեր վրան, մեր շուրջը։ Ա՛հ, կը սիրե՛ս զիս ...»

Երբ իր նայուածքը այս վերջին բառը արտասանեց՝ կամաց մը երկնցուցի ձեռքս իր ձեռքին ու քովս քաշեցի զինք։ Մելամաղձութեամբ վերցուցի գլուխս եւ երեսն ի վեր յուլօրէն իր լոյս բիբերուն մէջ նայելով,

«Թո՛ղ տուր, ըսի, որ ինքզինքս վեց տարի առաջ երազեմ։ Դուն հիմա կըմբռնես թէ կը սիրեմ քեզ եւ կը զարմանաս, կը յուզուիս։ Կը սիրէի քեզ, այո՛, հոգիիս խորէն, մտածումիս արմատներովը, աչքերուս պահարանովը ու ականջներուս քարայրովը, ռնգունքներուս ընդունարանովը եւ ձեռքերուս գրգարանովը։ Քեզի տենչացի ամէն վայրկեան, սուրբի մը պէս որ աստուածային շնորհքին կը տենչայ։ Քու հոգիդ երեւակայեցի ինչպէս

մութ սրբարան մը որուն մէջ վերջապէս, ինքզինքէս պիտի ազատագրուէի... ։

«Այնչափ աւելի սիրեցի քեզ — որչա՛փ քիչ անշուշտ — որքան օր օրի աւելի անկարելի տեսայ սէրիս փոխադարձումը։ Բայց հիմա, այս վերջալոյսին քեզ կանչեցի որպէսզի, գոնէ... ըսես... թէ կրնայի՞ր զիս սիրել։»

— Ինչո՞ւ գիտնալ ուզել. ինչո՞ւ միշտ դժբաղդ ըլլալ ուզել... Անդարմանալին շատոնց պատահած է։ Պիտի չըսեմ քեզի նոյն իսկ թէ մեր պատահումներուն մէջ համակրութեամբ թէ հակակրութեամբ կը տեսնէի քեզ։ Անցեալը փորելը մեծագոյն յիմարութիւնն է... ։»

Եւ հեռացաւ, ինչպէս եկած էր, վերջին երկար նայուածքէ մը ետք, մեղմօրէն ժպտելով ու ծնրադիր, իր ետեւէն մէկիկ մէկիկ համբուրեցի իր ոտքին հետքերը... ։

Digitized by Google

# ՀՈՎՈՒԵՐԳՈՒԹԻՒՆ



*Երկու հովիւ պատանիներ լեռն ի վեր կ'ելլէին։*

*Ամբողջ օրը արածել տալէ ետք իրենց հօտերը՝ զանոնք լեռան ոտքը գտնուող փարախը յանձնած էին։*

*Լերան գէմ յանդիման, հորիզոնը յամրաբար կը մարկանար իր կարմիրներէն. անհամար, անծայր սեւ քօղեր կը տարածուէին, կը պարուրէին դաշտը եւ աստիճանաբար կ'ողողէին լերան կողերը։*

*Երկու հովիւ պատանիներ լեռն ի վեր կ'ելլէին։*

*Իրիկուան զովացող զեփիւռը վայրի անանուխի ու ծոթորի գրգռիչ բուրումներ կը թռցնէր իր մէջ։ Հեռաւոր քաղաքէն ձայները կը մարէին, կը թաղուէին կամաց կամաց եւ տարտամ, թուխ ստուերին վրայ բնակութիւններուն անորոշ լոյսեր, երկիւղով իրենց բիբերը կը բանային։*

*Երկու հովիւ պատանիներ լեռն ի վեր կ'ելլէին։*

*Երկուքն ալ ամուր, պողպատէ սրունքներ ունէին ո-*

րոնց վրայ նուրբ մէջքերը համաչափ կը թեքուէին, հագիւ կրթնելով երկար ցուպին զոր թոյլ շնորհով մը իրենց թեւերը կը տեղափոխէին։ Գառնուկի թաւ մորթեր մինչեւ իրենց ազդրերը կ'իջնէին, կաշիէ սպիտակ զանկապաններ հագած էին եւ բազմակապ իրենց տրեխները ձայն չէին հաներ զամբուռներուն ու մոմոչներուն գորգին վրայէն յամրաբար յառաջանալով։

Երկնքին վրայ աստղերը մէկիկ մէկիկ կը վառէին, անոր հեռացող պարապին մէջէն հեռզհեռէ կը ծնէին, անըզգալաբար, լոյս ծաղիկներու պէս՝ սեւ ածուի մը վրայ։

Երկու հովիւ պատանիները լեռն ի վեր կ'ելլէին։

Նոյն բարձրութիւնը ունէին երկուքին ալ հասակները եւ անոնց միութենէն կազմուած քալուածքը դաշն էր ու նուագաւոր՝ ինչպէս եղեւիններու անտառի մը տատանումը։ Թուխ էին երկուքն ալ ու իրենց առողջ, արեւազարկ երեսներուն վրայ պերեւէշտները մաքուր ու կաթնազօծ էին դեռ։ Իրենց երկար թարթիչները, վախով, յանկարծ դէպի վար կը դառնային՝ ամէն անգամ որ դիպուածով իրենց սրունքները իրարու կը քսուէին եւ մէկուն իրանը միւսին վրայ կ'իյնար, մութին մէջ։

Digitized by Google

Հիմա, մութը աղէկ մը պատած էր չորս դին։ Յետամնաց ծիծեռնակներ, անոնց ուսին վրայէն, դէպի իրենց բոյները կը շտապէին։ Յանկարծ, խաւարին մէջ, հեռուէն անցնող առուակի մը խոխոջիւնը ճառագայթի մը պէս իջաւ անոնց վրայ ու սկսան աւելի որոշ տեսնել իրենց մէջը։

Երկու հովիւ պատանիները լեռն ի վեր կ'ելլէին։

Երբոր լեռան գագաթը հասան, մէկդի նետեցին իրենց ցուպերը ու դէմ դէմի նայեցան իրարու աչքին մէջ, դեռ բառ մը չըսած։

Յետոյ, յոգնած ինկան կակուղ մարմանդին վրայ։ Պահ մը ետքը, գլուխնին վերցուցած՝ երկարօրէն երկինքը կը խուզարկէին։ Երբոր գտան ամէն համաստեղութիւնները իրենց սովորական տեղերը, անոնցմէ այն որ աւելի գիտուն էր բռնեց, դողալով, միւսին ձեռքը եւ ուղղելով անոր ցուցամատը դէպի պզտիկ, պսպղուն կապոյտ աստղերը՝ իւրաքանչիւրին անունը տուաւ եւ անոնց շարժումները պատմեց. երկուքը միասին կը լեցուէին անոնց լուսաւոր քթթումներով։

Յանկարծ մօտակայ բլուրի մը գագաթը բռնկեցաւ եւ

Digitized by Google

երկնքէն իրենց նայուածքը սարսռալով իջաւ անոր վրայ։ Անոր սպասեցին՝ խանդոտ սեւեռումի մը մէջ։

Ալ չխօսեցան։ Լուսինը նախ ոսկի կէտ, յետոյ մահիկ երեւցաւ բլուրին ետեւէն. կէս սկաւառակ՝ գծուեցաւ երկնքին վրայ ու լուսաւոր գունտի մը նման՝ թաւալեցաւ անոր մէջ։

Երկու հովիւ պատանիները քով քովի քնացան լերան վրայ։

# ՏՈՒՆՍ

—

*Օհ, Աստուած, ոյժն ու քաջութիւնը տուր ինծի մարմինս եւ սիրտս վրայ նայելու առանց նողկանքի ։*

ՊՕՏԼԷՐ

Իմ տունս լերան մը ստորոտն է ու գահավէժի մը վըրայ, երկուքն ալ հաւասարապէս մթին անտառներով ծածկուած ։

Տո՞ւն է թէ վրան. — այնչա՛փ անգամ տեսարանը փոխուեցաւ աչքիս առջեւ. բարձրանալու տենչով ամէն անգամ քիչ մը աւելի վար գտայ ինքզինքս՝ խորխորատին ճամբուն վրայ ։

Նաւապետի մը պէս վտանգի մէջ իր նաւուն կամրըջակին վրայ՝ տունիս մէջ ետեւ ու առաջ կը վազեմ հիմա, փոխն ի փոխ քննելու երկու հեռանկարները ։

Երկուքն ալ իրենց հաւասարապէս մթին անտառներով՝ իմ վրաս կը խուժեն ու չուարած՝ անոնց մէջտեղ խըղդուիլ, անհետանալ կը կարծեմ ։

Digitized by Google

*Բայց մինչդեռ կը ճանչնամ այն անտառը որ տունիս ետեւը կը տարածուի, գիտեմ անոր թանձրահոծ մթութիւնները ու հազուադէպ լուսահետերը, անոր շատ թունաւոր տունկերը ու սակաւ անուշաբոյր ծաղիկները,*

*Կը դողա՛մ մտածելով անծանօթ արահետներուն անոր որ առջիս, գիսախռիւ կը գահավիժի, կ'իջնէ, յանգելով անվերջ, անյատակ անդունդին·*

*Տո՞ւն թէ դժոխք, կը հարցնեմ երբեմն ինքզինքիս ու կը տենչամ ոչինչով մը զայն հիմէն օդը հանել ու թաղուիլ անոր փլատակներուն տակ, չիջնելու համար աւելի վար, անդունդին ճամբուն վրայ...։*



Digitized by Google

# ԱՌԱՋԻՆ ՄԱՀԸ

—

Տիգրանն եղբօրս յիշատակին։

Հազիւ եօթը տարեկան էի։ Առաջին անգամն էր որ իմ մատաղ սիրտս մահուան ծանրութեանը տակ ջախջախուած կը զգար։ Իր հիւանդութեանը երկար ամիսներուն մէջ իմ հաստատ համոզումս էր թէ անպատճառ ա՛ն պիտի աղէկնար, որովհետեւ ես չարունակ կ'աղօթէի Աստուծոյ, եւ անմեղ տղայ մըն էի, Աստուած տղաքներուն ձայնը կը լըսէր եւ ուշ կամ կանուխ իմ սիրելիս անպատճառ պիտի հանէր անկողնէն։ — Սե՛ւ համոզում։ Առտու մը արթնցայ, իր սենեկին դուռը գոց գտայ. տունին մէջ, հոս հոն, կուլային եւ կը պոռային... Լախտի հարուած մը իջաւ գըլխուս վրայ. միտքս թմրեցաւ եւ սիրտս պակսեցաւ, հատաւ կուրծքիս տակ. անգիտակցաբար ես ալ արտասուելու սկսայ։ Բայց յանկարծ լուսաւոր գաղափար մը դադրեցուց արցունքս. — աղօթել, պաղատիլ Աստուծոյ, իմ մեծ հըսկայ Աստուծոյս՝ ողջնցնելու մեռելը։

Digitized by Google

Եւ շուտով առանձին սենեակ մը գացի փակուեցայ եւ ծնրադրած երկար, երկար ատեն աղօթեցի։ Թեւերս վեր բարձրացուցած, աչքերս երկինք յառած, մտքիս ամբողջ պրկումներովը սրտիս եւ հոգիիս անդունդները քրքրեցի, ջանալով գտնել Անոր գութը շարժող ամենէն աղուոր ամենէն հաճելի խօսք մը, բառ մը։ Մերթ, շուրջս, ետիս կը դարձնէի նայուածքս յուսալով գտնել մեռելը ողջընցած։ Օ՛հ, անպատճառ պիտի ողջնար ան, քանի որ չէին տարած թաղած. ես անմեղ տղայ մըն էի ու կ'աղօթէի. Աստուած տղաքներուն ձայնը կը լսէր եւ իմ սիրելիս անպատճառ պիտի կենդանացնէր։

Այսպէս ժամեր մնացի. երբեմն բառերս հատնելով, լուռ ու անշարժ՝ հողին փակած պզտիկ տունկի մը պէս եւ երբեմն լալով, հանդարտօրէն, առանց հեծկլտանքի, համոզուած թէ արցունքներուս կրակէ կաթիլները պիտի հալեցնէին սառէ սիրտը Աստուծոյ։ Ի՞նչ, վաղը, տանէի՞ն, թաղէի՞ն պիտի զայն. վա՞ղը — օ՛հ, չէ՛, չէ՛, վստահ էի, Աստուած թող չպիտի տար ու անպատճառ զայն պիտի ողջնցնէր։

Վաղը այսօր եղաւ եւ մեռելը մեռել մնաց միշտ։ Ցուղարկաւորներու բազմութեան առջեւէն ես ալ կ'երթայի, ճնշուած, կոտրած սրտով բայց յուսալով դեռ թէ պիտի

կենդանանար ան։ Գիտէի թէ Յիսուս դագաղին մէջէն մեռելներ ոտքի հանած էր եւ իմ սիրելիս ալ անպատճառ պիտի կենդանանար։ Սակայն կամաց կամաց, երբ դագաղը գերեզմանատան կը մօտենար, յոյս ալ կտոր կտոր կը փըրթէր, կը պզտիկնար։ Տարակոյսը կը ծնէր մէջս եւ ինծի կը թուէր թէ ձեռք մը հոգիիս մէջ անգթօրէն կը շարժէր Աստուածը. եթէ անիկա գոյութիւն ունէր, ինչո՞ւ չէր լսեր անմեղ տղու մը ձայնին ու չէր կենդանացներ սիրելիս։

Դագաղը չուաններու վրայէն սահելով, սուր կոընտոցներով փոսին մէջ իջաւ. անոր մէջը կը նայէի։ Շուրջանակի սեւ մարդեր սեւ հողեր եւ սեւ ձայներ կը նետէին. հողը կը զարնուէր դագաղին՝ կարծես արթնցնելու համար իմ սիրելիս իր քունէն։ Բայց ա՛ն անշարժ կը պառկէր միշտ եւ պահ մը ետքը, հողը գոցեց զայն ամբողջովին եւ երկնքի նման կամարաձեւ ծածկուեցաւ անոր վրայ։ Հիմա, ալ հաստատապէս կը զգայի թէ չպիտի ողջննար իմ սիրելիս։

Աւելի խոր քան այն փոսը ուր հանգչիլ գացիր դուն, ո՛վ Տիգրան, անդունդ մը բացուեցաւ իմ պզտիկ հոգիիս առջեւ, ուր տարակոյսին չուաններուն վրայէն, ցնորեցուցիչ արագութեամբ մը սահեցաւ, կորսուեցա՛ւ իմ ամբողջ հաւատքս . . . ։

Digitized by Google

# ՎԵՐԱԴԱՐՁ

—

*Իմ հին սիրելի՛ս, ահա երազին թեւով ետ կը դառնամ սիրելու զքեզ։*

*Այնպէս ճերմակ եղիր նորէն, այնպէս պզտիկ ու անառակ։*

*Դուն ես, կը տեսնեմ։ Մազերուդ ոսկին կը ցոլանայ աչքիս տակ, աչքերուդ կապոյտը կ'ալեծփի սրտիս մէջ։*
*Ճիշտ քու քովդ եմ. կը շնչեմ տաք բուրումը մորթիդ եւ կը գինովնամ. մութ կը տեսնեմ եւ կ'երկնցնեմ թեւս քաշելու հարուստ գլուխդ ինծի։*

*Ո՛չ, կ'երազեմ անշուշտ. դուն չես այն չար նայուածքին տէրը որ վրաս կը դառնայ եւ նախատինքով, կըսպառնայ ինծի։*

*Բայց անկէ ետք ա՛լ ինչո՞ւ չունիմ գորովի հին յորդումները առջիդ. ինչո՞ւ, երբ իրիկունը սենեակիս մէջ մինակ կը մնամ՝ անկողնիս ոտքը կը ծնրադրեմ եւ գալարուող բա-*

Digitized by Google

զուկներուս մէջ քեզ բռնել կարծելով՝ յորդահոս կուլամ։

Օձի մը շարժիլը կը զգամ հոգիիս խորը երբ դուն երեսդ կը մօտեցնես ուրիշ երեսի մը — կոշտ երեսի մը — ու կը խնդաս։

Ես, կը խորհիմ հեռուէն. — ինչպէ՞ս ես երբեք չկրցայ զգալ հպումը իր մորթին. ի՞նչպէս երջանկութեամբ պիտի պահէի այդ շօշափումին զգայնութիւնը։

Եւ օր մըն ալ կը տեսնեմ որ ինծի կուգաս։ Ես վախով ետ ետ կը քաշուիմ, գիշերը երթալ այդ յիմարութիւնս լալու համար։

Կը թողուս հասկցնել որ ա՛լ առաջուան պէս չար չպիտի ըլլաս. երբոր կը հարցնես պատճառը իմ հեռաւորութեանս՝ կ՚ըսեմ

— Վիրաւորեցիր զիս

եւ կը պատասխանես

— Օհ, անգամ մը, ակամայ, մոռցի՛ր զայն.

եւ չեմ կրնար գիրկդ նետուիլ եւ մոռնա՛լ։

Տունդ, քու սենեակիդ մէջ դողալով կը պտտիմ՝ երբ դուն հոն չես։ Քու շունչդ կը գտնեմ անկիւններուն մէջ՝

Digitized by Google

մեղրի չափ անուշ ու կը չնչեմ. պատուհանին առջեւ, ծո-վին կը նայիմ, խաղաղ ու կապոյտ, եւ անոր դէմ, այնտեղ, երազը կը հիւսեմ զքեզ սիրելու։

Անկէ ետք, ա՛լ այդ սենեակը իմ սեւեռեալ մտածումս կ՚ըլլայ. անոր մէջ կը տեսնեմ քեզ, ոտքի վրայ, պառ-կած, մերկ, խորհելով, կարդալով, սիրելով եւ ինքիրենս ժամադրութիւններ կուտամ հոն քեզի, անկարելի եւ ըղ-գըլխիչ սիրոյ ժամադրութիւններ։

Անջրպետէն անդին զոր ակամայ դրած եմ մեր մէջտեղը, քեզի չնայելով, քեզի չդպելու մարտիրոսութեամբ, քու մերկութեանդ տեսիլքը կը հետապնդէ զիս եւ անհամբեր կը սպասեմ այն օրին ուր ծովին մէջ, պիտի ազատօրէն դիտեմ քեզ։

Կրակի կտոր մը կ՚ածխացնէ երեւակայութիւնս երբ հագիւ, աչքիս տակ կը ցոլայ հոլանի սպիտակութիւնը մարմնիդ եւ կ՚անհետանայ ջուրին սէջ։ Կը վախնա՞ս ինձմէ. ատիկա կը խորհիմ երկար ատեն եւ կը տրտմիմ, մահու չափ։

Օ՛հ, համբոյրը որ յաւիտեան թեւաբաղխեց չըթունք-

Digitized by Google

ներուս վրայ, վիրաւոր թռչունի մը պէս. հեռու էր ու հիւրամերժ բոյնը ուր ան կ'ուզէր հանգչիլ։

Օ՜հ, տասնըհինգ տարեկանի անզուսպ, անխառն ուժը որ կ'եռար հոգիիս մէջ. գետին ջուրերուն պէս որ արգելք կը գտնեն հոսելու՝ իր եզերքները աւերեց։

Անկէ ի վեր, ամէն անգամ որ սիրոյ ծարաւը կրծեց սիրտս, երեւակայութիւնս յետադարձ թռիչով մը քեզի վազեց ու փակ սենեակիդ առջեւ կեցաւ։

«Անոր նե՛րսը» հառաչեցի միշտ. անոր ներսը որ մարմինիդ հետ հոգիիդ ալ էր, ուր խորհրդի ժամերուդ, թերեւս, ամբողջ կարաւան մը կ'անցնէր, Երազի ու Գորովի՝ որուն մէջ, թերեւս, ո՞վ գիտէ, իմ պզտիկ տեղս ունէի ես ալ...։



# ՈՒՐԱԽՈՒԹԻՒՆ

—

*Այն օրը պիտի չմոռնամ։ Կըզգայի որ երջանիկ էի, քանդուած սիրոյ մը բեկորներուն մէջ գիտնալով որ վերջին անգամ կը գտնէի զիս հմայելու համար պէտք եղած հրապոյրը։ Ամբողջ տասը վայրկեան իր քայլերուն հետեւեցայ, կամուրջին վրայ անձրեւոտ օր մը, ոտքերս ճըշդիւ դնելով հոն ուրկէ վայրկեան մը առաջ իրենները կը հանէր, ինծի չնչելով ու տարածելով սրտիս մէջ իր խօսքերուն եւ խնդալներուն արձագանգը։ Սիրոյ մէջ ուրախութեան վարժուած չեմ եւ երջանկութեանս այդ կարճ միջոցին ամէն երկվայրկեան կրկին վախը ունէի տեսիլքին անհետացումին՝ ձանձրոյթով կամ ճամբուն վերջանալովը։ Մէկը կար հետը, եւ քալելով՝ ինքզինքս այն մէկուն տեղը կերեւակայէի որուն թեւը մտած էր։ Այն գերագոյն զգուանքը զոր կը զգար անշուշտ այն միւսը՝ անկէ ինծի կը փոխանցուէր, թեւս կը փայփայէր եւ մարմնիս վրայ կը տարածուէր։ Այդ օրը, ամենէն քիչ պղատոնական զգացի այն հին սէրը։ Մտածեցի թէ հրաշալի ըլլալու*

Digitized by Google

էր անցնել թեւս իր մէջքին շուրջը, մատներս սահեցնել իր մարմինին վրայ եւ բերանս իր բերնին կցել . . . ։

Օ՜հ, այդպէս կեանք մը հաճոյքով պիտի ընդունէի, սիրուած էակին ետեւէն անձրեւոտ օրով երկա՜ր ճամբայ մը, անոր չմոռնալու յօժար զրկանքովը, իր ծիծաղին հունչը երակներուս մէջ զովութիւն մը հոսեցնելով, իր թռչտուն բառերուն իմաստը տարրալուծելով եւ սնանելով անոնցմով, շնչելով օդը զոր շնչեց, կոխելով հոն ուր կոխեց, աղուո՜ր, աղուո՜ր ճամբան մինչեւ այն օրը անշուշտ, ուր երբեք չհասած իրարու, պիտի սուզուինք երկուքս ալ հողին մէջ, մեր առջեւ, իրարմէ քա՛յլ մը հեռու . . .

Digitized by Google

# ՆԱՐԿԻՍ

—

Վիշտը փախցուց Նարկիսը իր խաղաղ գիւղէն։

Մոլորուն քայլերը վայրահակ գլխուն ծանրութենէն առաջնորդուած՝ զայն բնազդաբար մղեցին դէպի անտառին խորը ուր գարունը նոր կը ծնէր եւ որուն հեւքոտ ստուերին մէջէն մեկնող թռչուններուն կողկողանքը իր սրտէն ելլել կը թուէր իրեն։ Միտքը կը տանջուէր տեսիլքովը իր ընկերին որմէ կը փախչէր. անոր հասակը կը կարծէր տեսնել իւրաքանչիւր ուռիի թեքումին վրայ, անոր նայուածքը կը գուշակէր տերեւներուն բացուածքներէն ինկած լոյսի հատուածներուն մէջ, անոր շունչը կը շնչէր երեսին վրայ խաղացող զեփիւռէն ...։

Երբոր կեցաւ, վերջապէս, հսկայ բարտիի մը տակ եւ գոցեց աչքերը՝ աւելի յստակ տեսնելու համար իր ընկերին դէմքը՝ զղջաց փախած ըլլալուն համար անոր քովէն։ Երջանկութիւն մըն էր անոր քովը ըլլալ, ձայնը լսել եւ նայուածքը ըմպել՝ որչափ ալ ցաւագին անիկա՝ որովհետեւ երբեք օր մը անոր ականջէն վար խորհրդաւոր

Digitized by Google

բառ մը չէր կրցած փսփսալ, անզուսպ տենչանքի վայրկեանի մը երբեք չէր սեղմած անոր թեւը եւ ամառ գիշեր մը, լուսնին ծորած անուշութեանը տակ, խելայեղօրէն, իր թեւին վրայ չէր շրջած անոր գլուխը եւ բերնին դէմ մոլեգնաբար զայն չէր համբուրած...։ Զայն ճանչնալէն ի վեր, այդպէս, միշտ տանջանք մը եղած էր իր սէրը. քանի անգամներ Նարկիս զայն չտեսնել ուզած էր ու չէր կրցած եւ քանի անգամներ առաջադրած էր հանդարտօրէն, քաղցրութեան մէջ այն վայրի զգացումը բնական երեւցնելու համար՝ մեղմօրէն բանալ իր սիրտը անոր առջեւ եւ չէր կրցած։ Խպնոտ, ձախաւեր ու բիրտ եղաւ անոր քով որուն պիտի ուզէր քալած ճամբան ըլլալ անկէ կոխկրտուելու համար։ Գիշերները անոր տեսքովը կը խռովուէր իր քունը ու առտուն այդ խռովքով մխիթարուած կ'արթննար, զայն երազին մէջ գոնէ վայրկեան մը իր քով ունեցած ըլլալուն գոհութեամբն ու ոգեւորութեամբը։ Ինչպէ՜ս շուտ կը տրտմէր սակայն. երազէն դուրս ամէն մէկ քայլ զինք կը բաղխեցնէր առարկաներուն եւ մարդերուն որոնք կոշտօրէն իրական էին ամենքն ալ։ Իր աննիւթական սէրը կը վիրաւորուէր, կ'ընկճուէր աշխարհքի հետ շօշափումին մէջ եւ Նարկիս կը սրտմտէր, անոր մարմին առնելուն պէտքը կը պահանջէր, կ'ուզէր յիշել ցաւը, ձայնին

ու համբոյրին քաղցրութիւնը որոնցմէ երազը յիշատակ չթողուր։ Իր կեանքը, այդպէս, ճամբուն եզերքը բուսնող երկայն տատասկի մը պէս եղաւ, միայնակ եւ անմատչելի, դժխեմ, ծածկուած փուշիններու տակ ու չկրնալով անգամ իր պզտիկ ծաղիկը բանալ՝ մխիթարուելու համար։

Իր ընկերին երկայն էր հասակը. իրենց դաշտին հողին ոյժը եւ թուխ գոյնն անցած էր մորթին մէջ ու երբոր կ'երթար ան՝ մերկ, բարձրերուն դնդերները դողացնելով ու երգելով, վերէն վար, մարմինին անպարագիծ ներդաշնակութիւնը՝ կ'երգէր իր սիրտն ալ, ցաւի մէջ, ինչպէս վախով բացուած դուռ մը։ Ինչպէ՞ս պիտի կրնար երբեք հասկցնել անոր թէ իր ամէն շարժումները, ամեն բառերը, ամեն նայուածքները, կը ժողվէր, իր մէջը կ'առնէր ինք, թէ իրմով կ'ապրէր միայն, թէ անհեւլիօրէն անիրաւ էր որ ինք երբեք չգիտնար այս բոլորը։

Յաճախ Նարկիս կը տեսնէր զայն որ կ'երթար անգիտակ իր մեծափառ գեղեցկութեանը եւ փոխանակ մօտենալու ու խօսելու անոր՝ կը նախընտրէր պահուիլ մացառներուն ետին ու գողի պէս, սողոսկելով հեռուէն կը հետեւէր անոր։ Անոր վրայ պիտի վազէր, անոր ոտքին ներքեւը, փոշիին մէջ գլտորէր եւ համբուրելով անոր ծունկերը՝ պիտի աղաչէր, պիտի պոռար որ սրտին մէջ նայի, աչքե-

Digitized by Google

րուն մէջ, վայրկեան մը կարեկցութեամբ նայի՝ որոնց խորը իր պատկերը դրոշմուած պիտի գտնէր։ Կամ կը փափաքէր, փուշերուն վրայ ձեռքերը արիւնոտելով, անոնց ետեւէն, երկվայրկեան մը չբաժնելով նայուածքը անոր պաշտելի հասակէն, կը փափաքէր որ յանկարծ վտանգ մը պատահէր, ցուլ մը որ անոր վրան վազէր, սաստիկ երկրաշարժ մը որ զայն գետին ձգէր կամ կայծակը որ աչքին դէմ ծառ մը բոցավառէր՝ որպէսզի իր թաքստոցէն դուրս սրանալով զայն թեւերուն մէջ վերցնէր, տրոփող սիրտը սրտին վրայ սեղմած՝ փայփայելով եւ երկարօրէն օրրելով՝ զայն եղբայրօրէն խաղաղեցնէր...։

Գիւղին ամէն տղաքներուն հետ Նարկիս զայն մտերիմ տեսած էր. կատակներ կ'ընէին միասին եւ տօնի օրերը. երբեմն, նախանձոտ աղջիկներուն նայուածքին տակ, գիւղին հրապարակին վրայ անիկա ըմբշամարտի կ'ելլէր իրեն հասակակից պատանիներու հետ։ Նարկիս հեռուէն կը նայէր օտար թեւերուն որոնք կը գրկէին անոր մերկ ու կարմրած մէջքը. անոր քամակը ծանր ճիգերով կը ծռէր ու կը բարձրանար, քրտինքին տակ փայլփլուն իրանը մէկ մը աջ, մէկ մը ձախ կը թեքուէր, հոլանի թեւերուն երակները կուռենային, մինչդեռ յետնաբազուկին ջիղերը պրկուելով՝ կը դիզուէին ընկոյզներու մեծութեամբ։ Մէկ

Digitized by Google

ոտքը ետեւ եւ մարմինը ամբողջ յառաջ ձգուած, սրունքները իր ոսոխին սրունքներուն կ'անցնէին, կը հիւսուէին միասին, եւ Նարկիս մոլեգին ու ուժգոյն՝ կը դրդուէր հրապարակին վրայ նետուիլ ու բրտօրէն բաժնել զանոնք իրարմէ։ Երբոր, ինչպէս յաճախ, յաղթանակը իր ընկերին կը մնար, գիւղին ամենէն աղուոր աղջիկները կուգային անոր շուրջը զայն հովահրել ու անոր քրտինքը սրբել։ Հեռուէն, քարացած, Նարկիս կը դիտէր անոնց խումբը, նախանձով խառն հպարտութիւնով մը լեցունելով սիրտը՝ ինքնիրենը ըսելով, իբրեւ մխիթարութիւն, թէ վերջապէս անարժան տեղ մը չէր դրած իր սէրը . . . ։

Այդպէս, հեռուէն, ամէն օր հետեւելով անոր — որովհետեւ հետզհետէ աւելի վայրենի կ'ընէր զինք սէրը ու չէր համարձակեր ա՛լ խօսիլ իսկ անոր — երկարօրէն Նարկիս կ'ուսումնասիրէր անոր շարժումները. անոր քալուածքը շնորհալի ու հպարտ կը գտնէր միանգամայն եւ անզգալաբար անոր նմանելու տենչով, սկսաւ իր հասակն ալ անոր հասակին լքումը առնել եւ իրենը ընել անոր գլխու բարձր բռնուածքը։ Այդպէս, գիշեր մը, լուսնակ լոյսով գացած ատեն, առջեւէն երկարող իր ստուերը յանկարծ զարմացուց եւ հմայեց զինք. իր ընկերին հասակն էր, անոր շարժուածքովը որ կը փախչէր առջեւէն . . . ։ Ուրիշ անգամ մը, անցորդ ծերունի մը որ

Digitized by Google

նստած էր հանգչելու համար գիւղին աղբիւրին քովը, անոնց երկուքին իրարմէ քիչ հեռու անցնիլը տեսնելով՝ կանչեց եւ քաղցրութեամբ հարցուց

— Երկու եղբայրնե՞ր էք դուք ։

Օ՛հ, հաճոյքը զոր անգիտակցօրէն այդ օտարականը ընծայեց Նարկիսին ։ Անոր վրայ վազէր եւ երախտիքով պիտի համբուրէր օրհնելու համար երկարած անոր ձեռքերը . . . ։ Կարմրած՝ հազիւ համարձակեցաւ սակայն նայուածքը վերցնել իր ընկերին վրայ որ ինքն ալ յուզուած , — չգիտնալով ինչո՞ւ , — պատասխանեց .

— Եղբօր նման էինք առաջ , բայց հիմա ժամանակէ մը ի վեր հազիւ ծանօթներ ենք ։

Ի՞նչ ըսել, Նարկիս չբողոքեց անգամ իր ընկերին աննարկութեանը դէմ ։ Ի՞նչ օգուտ. պիտի կրնա՞ր երբեք ըսել անոր ինչ որ կուզէր ըսել ։ Եւ եթէ համարձակէր բանալ ու դնել սիրտը անոր առջեւ, ա՛ն պիտի վախնար անշուշտ ու նողկանքով պիտի ետ ետ քաշուէր. . . Մահը նախամեծար կը համարէր անոր քամահանքէն , որովհետեւ , գոնէ , կը մտածէր թէ մեռնելէն ետքը , անկեղծօրէն , ի յիշատակ իրենց անցեալ բարեկամութեան անոր աչքերէն ինկած քանի մը կաթիլ արցունք պիտի սփոփէին իր շատ տառապած ոսկորները . . . ։

. . . . . . . . . . . . . . . . . . .

Digitized by Google

Յամրաբար, Նորաբոյս ծղօտներուն վրայէն անցնելով, Նարկիս հասաւ անտառին մէջտեղը լուսանետի մը ներքեւ ցոլացող լճին եզերքը։ Երկու ձեռքերովը նիհար կուրծքը կը սեղմէր՝ մեղմելու համար անոր բուռն զարկերը։ Յանկարծ նայուածքը ինկաւ ոտքին տակ ջուրին մէջ անդրադարձող պատկերին վրայ։ Այն միեւնոյն դողը որ լուսնի լոյսով գիշեր մը զինք դրաւած էր՝ կափկափել կուտար դարձեալ իր ակռաները։ Ջուրին գորշ հայելիին մէջ գլխիվայր կը տեսնէր պատկերը անոր ուրկէ յուսահատ եւ վիրաւոր փախած էր եւ զոր կը փնտռէր հիմա։ Անոր մարմնին շրջագիծն էր որ կ՚իջնէր վար, ուսին վրայ գլխու նոյն հակումով. անութին ներքեւէն նոյն յոյր գիծը կը վազէր որ մէջքին վրայ կորնթարթ չեղուելով սրունքներուն գիրգ կաղապարները կը գրկէր, ծունկին մէջ կը նեղնար եւ անզգալաբար սեղմուելով ոտքին վրայ կը տարածուէր։ Ա՛հ, այդ հասակը. եւ զմայլած Նարկիս նայեցաւ անոր մէջ։ Ծռեցաւ, բարձրացաւ, փոխեց իր դիրքը բայց որչափ շարժէր՝ կարծես այնչափ աւելի՜ հաւատարմօրէն զայն երեւան կը հանէր ջուրին մէջ։ Յետոյ հանդարտեցաւ իր տենդը եւ ինքնիրենը ըսաւ թէ աստուածներուն կողմէ իր անմեղութեանը տրուած պատիժ մըն էր, թէ ջուրին մէջի էակը ինքը չէր կրնար ըլլալ, թէ թաքուն զօրութիւն մը անով զինք դեռ կը

Digitized by Google

հալածէր, ձեռքին տակ եւ անմատչելի կ'ընծայէր իրեն իր անսահման սիրոյն առարկան ... Ի՞նչ փոյթ. հիմա անկէ իր ամբողջ կարօտը պիտի կրնար առնել։ Հիմա, օրերով լճին եզերքը գամուած կը մնար, անկարող վայրկեան մ'անգամ հեռանալու անոր քովէն եւ նունուֆարներուն մէջէն ու-րոնք ջուրին երեսը կ'օրօրուէին, հակած՝ կըզմայլէր իր պատկերին վրայ որ իր ընկերինն ալ էր ...

Օր օրի մարմինը կը նիհարնար ու կը թօշնէր, ինք-նիր վրայ կ'ամփոփուէր, բայց հրաշքով մը կը պահէր միշտ սիրուած էակին հետ նմանութիւնը։ Աչքերը լայնաբաց բիբե-րով, կը փողփողէին աստղերու նման եւ իրանը ամէն օր քիչ մ'աւելի առաջ կը ծռէր։ Այդպէս լուիկ, զմայլելով ու սիրելով՝ Նարկիս հիւծեցաւ ու իրիկուան մը դէմ ինկաւ, հազիւ լսելի ճողփիւնով մը, լճին երեսին վրայ։ Կարապ-ները, հոնկէ անցած ատեն, իրենցմէ կարծեցին զայն ու տարին անոր անկշիռ մարմինը, չուշաններուն մաքուր ա-ղօթքին ու սէզերուն լացող թարթիչներուն մէջէն ...։

———

## ԳԹՈՒԹԻՒՆ

—

Ձմեռուան ամպոտ օրուան մը իրիկուընը յուշիկ,
Ցամրորոգայթ, թափանցիկ եւ հնչական.
Փողոցին մէջ անցքը մանուկներու երգեցիկ,
Իրերագիրկ, պաղատագին իրենց ձայնով,
Մոլորած ծիծեռնակի մը նըման,
Ջարնուելով գոց պատուհաններուն
Եւ անցնելով։

Սենեկին մէջ փայլուն բոցի մը դիմաց,
Թիկնաթոռի մը խորը, թաղուեր՝
Գիտեմ թէ ցուրտ է դուրսը
Եւ գիրքը ձեռքէս սահելով ինկած
Թաւ գորգի մը մէջ՝ կը լեցուիմ կամաց
Ու կամաց հաստ ու ծանր վարագոյրներուն
Թօնած իրիկուան մութով...։
Վարէն անցնող մուրացիկ տղոց ձայնը սակայն
Խռովեց հոգիս. ձայն անմեղութեան,
Թշուառութեան ձայն։
Կ'ուզէի տեսնել պզտիկ իրաններն իրենց
Փաթտուած շալերու մէջ բզիկ բզիկ,

Կռնակնուն վրայ հանգոյցով մը մեծ,
Կապոյտ ձեռքերով ու մերկ ոտքերը
Հնչեցնելով մայթին վրայ
Ու քաշելով քայլ առ քայլ
Տրեխներ մեծ մարդու...։

Հոս կրակին դէմ կ'ուզէի որ մսած
Իրենց անդամները տաքցնէին.
Գոհ եւ զարմացած իրենց աչքերը վրաս դարձնէին։
Անոնց տաք կերակուր կերցնէի
Ու գինի խմէին...
Ինծի պատմէին թէ ուրկէ կուգան
Եւ ո՞ւր այս գիշեր պառկիլ պիտի երթան.
Զանոնք մտիկ ընելով
Բարութիւնը ողողէր զիս
Եւ գութին առջեւ լայն բացուէր հոգիս.
Անոնց հետ ես պզտիկ ըլլայի
Ու երջանիկ մանկութիւնս յիշէի.
Երգէին անգամ մըն ալ իրենց երգը
Ու անոնց երգին պարզութիւնը սորվէի...։

Digitized by Google

# ՑՆՈՐՔ

—

Գինովութի՜ւն, գինովութի՜ւն։ Համարձակած
Եթէ ըլլայի մէկուն քով անոնց,
Մէկուն միայն՝ սիրոյ առաջին օրերուն
Ուր տենչանքն ինչպէս աղբիւր մը ջուրի
Կը ժայթքէր առատ ու զով…
Եթէ համոզելով, ստիպելով ու բռնի
Ինկած ըլլար տակ ու հարուստ մարմինը
Թեւերուս մէջ… եթէ փայփայելէ յետոյ
Իր կուրծքը, իր թեւերն ու սրունքները,
Համբուրելէ յետոյ աչքերն ու բերանը,
Բանտարկած իր կուրծքը թեւերուս մէջ, [վերջ՝
Եթէ սէրին տալ կրցած մաքուր ու ամբողջ երջանկութենէն
Յանկարծ պայծառ ու անուշ յագեցումը իջնէր
Հոգիիս խորը եւ գոհութիւնը վճիտ
Ծագէր դէմքիս վրայ, բազուկներս իյնային
Ու հեռանալով, ժպտելով, հանդարտ,
Շուարած իր նայուածքին տակ
Եթէ մութ անկիւնը դառնայի ուրկէ ելած էի…

Գինովութի՜ւն, գինովութի՜ւն. համարձակած
Եթէ ըլլայի…։

* * *

Երբ ներկային մէջ Գեղեցկութիւնը ինչպէս
Ծուխ կը ցնդի աչքիս տակ
Եւ Երջանկութիւնը կը փախչի ինչպէս սնդիկ
Ձեռքիս մէջէն՝ ցամաք սիրտս ոստումով
Մը կը նետուի Յիշատակին վրայ
Եւ մագիլներուն մէջ բռնած զանի
Կը ստիպէ՝ չորցած խաղողի ողկոյզ՝
Քամել դեռ ումպ մը իրեն համար,
Շոգիացած իր հիւթէն . . .
Սիրտս ու մարմինս իրենց ուժը կըսպառեն
Յիշատակին վրայ այս սեղմումին մէջ.
Երբ աչքերս կը բարձրանան երազին
Խորը իրենց ընկղմումէն ու միաժամանակ
Կծկուած մատներս կը բացուին ու կը թողուն կարծես
Անտես իրենց որոր, երբ գինովութիւնը
Քամուած հետզհետէ աւելի լեղի
Այն կաթիլին՝ կը ցնդի՛,
Երբ վիրաւոր ինչպէս մսիս մէջ
Նետէ մը փախչող ու փախած սէրին
Կը վազէ արիւնըս ճերմակ,
Երբ մեռած կարծես կը մնամ անկիւն մը
Չհասկնալով իմաստը, չուրջս
Բառերուն ու շարժումներուն՝
Բարեկամ ձայն մը կը մրմնջէ ականջիս . . .

Digitized by Google

*
* *

« Հոգիդ հիւանդ է ու պէտք տառապիս
« Որչափ ատեն որ չկապես երեւակայութեանդ վէրքը
« Իրականութեան հաստատ վիրակապերով.
« Երազը անդունդ մըն է
« Որուն խորը նայելով
« Ամենէն ամուր խառնուածքները
« Գլխու պտոյտէ կը բռնուին ։
« Նպատակով մը զինէ հոգիդ
« Եւ քալէ՛ շիտակ նայելով առջիդ,
« Առանց թոյլատրելու որ սիրտդ՝ հլու
« Ցիշատակին ձայնին՝ գլուխը ետ դարձնէ
« Եւ փնտռէ վարդագոյն ճամբան
« Անցած օրերուն ...»

Կըսէ ու կը լռէ ... կը ժպտիմ
Ձայնին ետեւէն ... դէպ՛ իրեն վայրկեան մը վերամբարձ
Ձեռքերս կ՛իյնան վար նորէն եւ գլխիվայր
Կը նետուիմ երազի անդունդին խորը ...

# ՍԻՐՈՅ ԿՂԶԻՆ

—

*Իմ կեանքս երկար երազ մը եղաւ*
*Իրականութեան հաղուադէպ պատառուածքներով։*

*Երազով մտայ ես սիրոյ կղզին,*
*Դէպի սիրոյ կղզին ես մեղմօրէն ճամբորդեցի*
*Օրերուն հոսանքին վրայէն,*
*Տենչանքներուս խորհրդաւոր նաւակին մէջ։*
*Եւ առանձին ես մտայ սիրոյ կղզին,*
*Չնախանձելով երջանիկ զոյգերու տեսքին*
*Եւ հպարտ եմ ինքնագոհ ամայութեանս մէջ...*
*Քանզի իմ ընկերս իմ մէջս էր հաստատուած*
*Ու անտես ինծի կ'ընկերանար իմ պտոյտներուս մէջ,*
*Ու անխօս ինծի կը պատմէր իր հոգին խրոխտ ու պերճ*
*Ու անշարժ զիս կը գրկէր իր զգուանքներուն անվերջ...*

*Սիրոյ կղզիէն ես նամակներ ու տաղեր ղրկեցի*
*Հեռաւոր իմ ընկերիս. բայց կղզիին ափունքն հասած*

Մթնոլորտին բոցերուն մէջ կ'այրէին անոնք՝
Ճերմակաթեւ աղաւնիններ իմ հոգիէս թռած...
Կ'ըսէի անոր ինչպէս զինք սիրելու համար
Աւելորդ զգեստներուս նման պիտի նետէի
Ամբողջ հպարտութիւնս մէկդի
Եւ եթէ ուզէր ինչպէս միասին կուրծք կուրծքի
Պիտի վայրկեանները համրէինք
Մեր միացած շրթունքներուն զարկերով...

Կ'ըսէի, կ'ըսէի... բայց ան չիմացաւ երբեք
Ինչ որ կ'ըսէի։ Եւ օր մը, միայնակ
Սիրոյ կղզիին մէջ ես մեղմօրէն մեռայ...

Digitized by Google

# ՄԽԻԹԱՐՈՒԹԻՒՆ

Գիտե՞ս թէ տարիներ առաջ մենք կրնայինք սիրել իրար ու թերեւս, երջանիկ ըլլալ։

Գիտե՞ս թէ տարիներ առաջ ես սիրեցի քեզ, խորհուրդով ու զգուշութեամբ ու երջանիկ եղայ։

Սիրած ըլլալուն անամիտ երջանկութի՛ւնը երբ անով սիրոյ մանրավէպերը միայն ճանչցայ առանց անոր գլխաւոր արարուածին։

Հիմա կը մտածեմ թէ ինչ որ կար ամենէն աւելի ազուոր, ամենէն շատ զիս երջանիկ ընող անոր մէջ՝ երազն էր։

Երազն էր, օրինակի համար, քեզի խօսելու, քեզ ճանչնալու, քեզի դպելու, քեզ երկարօրէն դիտելու, քեզ գաղտագողի համբուրելու։

Լա՞ւ ըրի թէ գէշ քեզի սիրտս չպարզելով։ Եթէ անուրջներուս տիպարը պիտի պղտիկնար, պիտի կտրէր ծա-

Digitized by Google

նօթութեանս մէջ՝ աղէկ որ չբացուեցան շրթունքներս։

Եթէ ազնիւ հոգիիդ ու սիրող սրտիդ պատուաստը պիտի բերէիր իմ զանգաչող հոգիիս, եթէ անխառն գինովութեան քանի մը վայրկեաններ պիտի ապրէի քովդ ու պիտի ապրեցնէի քեզի՝ կը զղջա՛մ չքաշած ըլլալուս խոստովանութիւններուն համրիչը։

Բայց նոյն իսկ այդ վայրկեանը հիմա, հոգիս, թռած պիտի ըլլար. գինովութիւնը շատո՛նց ցնդած էր հիմա ու ոսկի ճառագայթը՝ փեռեկտած, գոցուած մշուշին տակ։

... Մինչդեռ հիմա Սէրը ինծի համար յաւիտեան Հիւսիսայգն է զոր լերան ետեւը գուշակեցի, Աստուածն է որ առջեւէս անցաւ, քող մը նետելով աչքերուս վրայ...

Digitized by Google

# ԵՐԱԶՆԵՐՈՒՍ ԱԼՊՈՄԸ

Մտքիս մէջ ալպոմ մը ունիմ ուր գարուն տարիքը իր պզտիկ առանձին անուրջներն է գծած՝ դէպի աշուն անցնող ծիծեռնակի մը թեւով։

Հին երազները հոն թեթեւ ջրանկարներ են ձգած, ամառ գիշերներու հեշտական երազներ որոնք ցերեկները կը սերերփնէին։

Պզտիկ էջերը հիմա մէկիկ մէկիկ կը դառնան ու սիրտս կը ծանրանայ անոնց վրայ, ծանր երբեմնի սէրերով։

* * *

Բնութեան պատառ մը կ՚երեւի։ Ձմեռուան ճերմակ օր մը։ Քով քովի քալող մեր երկուքին ոտքերը որոնք կէտեր կը շարեն լերան միապաղաղ ձիւնին վրայ։ Յանկարծ, այդ ընդհանուր հանդարտութեան մէջ, ինքզինքս մինակ զգալով անոր քով, տենչանք մը որ կը յառնու սրտիս մէջ. զայն հոն, անմիջապէս համբուրելուն տենչանքը։ Մեր համաչափ քայլերուն ներքեւ տեղի տուող ձիւնին խշշըրտուքին մէջ, պզտիկ Սէրը ոտքին ծայրերուն վրայ ցցուելով ականջիս մէջ կը փչէ իր յիմար ու վայրենի երգը։ Քովնտի, վախնալով կը նայիմ մօտէս գացող հասակին եւ

Digitized by Google

կըսկսիմ բարձրաձայն խօսիլ ու պոռալ խեղդելու համար սրտիս մէջ Տենչանքին անառակ ձայնը ... ։

* * *

Նախանձոտ էի այն ատեն եւ իմ սիրոյս մեծութիւնը ցուցնելու համար՝ գժտեցայ անոր հետ ։ Փողոցը երբոր իրարու կը հանդիպէինք , արհամարհանքով կը նայէի անոր՝ նայուածքիս մէջ դնելով մոռացումին ամբողջ գոհութիւնն եւ զարմանքը ։

Արդ, գիշեր մը երազեցի որ առանձին ճամբու մը մէջ կը հետեւէի անոր ։ Տերեւներու թանձր խաւով մը յատակուած, տերեւներ՝ առաստաղ եւ տերեւներ՝ պատ այդ նեղ ճամբուն , գլուխս քսուելով տերեւներուն՝ ծունկի վրայ կ'երթայի անոր ետեւէն ։ Կանանչ մթութիւն մը կը լեցուէր, կը խռնուէր ճամբուն մէջ եւ անձայն, աւելի զգալով քան տեսնելով զայն, կը հետեւէի անոր, զայն միշտ կորսնցունելու վախով ։

Երբեմն լոյսի ծաղիկ մը, խաւարով հիւսուած առաստաղէն կ'իյնար անոր գլխուն վրայ եւ երեւան կը հանէր վարդագոյն փոքրիկ ականջ մը կամ ծոծրակին անդուսէ, թարմ մորթը ։ Իր շարժումին թեթեւ աղմուկը սկսայ որոշել եւ անհունօրէն երջանիկ անոր անցած տեղէն անցնելուս , նեղ ու ցած կանանչ ճամբէն գացի, գացի՜ մինչեւ առաւօտ թերեւս , երբ հեշտանքով թօթուելով արտեւա-

նունքս, ուրախութեան տակ արցունքներուն զգացի հոսումը այտերուս վրայ...։

* * *

Ինչպէ՛ս հաճելի սկսած էր գտնել իր տեսքը եւ ինչո՜ւ յանկարծ հեռացայ իր քովէն։ Անսովոր երջանկութիւնն էր գուցէ որ կը վախցնէր զիս։ Հեռուէն հիմա իր վրայ կը մտածէի, իր քովը կ'երթայի, իր կեանքին, իր հոգիին մէջը կը մտնէի, կը գտնէի զինքը գեղեցիկ՝ իմ ամէն սիրած գեղեցկութիւններովս ու հետզհետէ աւելի կը ցաւէի՝ գործած յիմարութեանս վրայ...

Եւ գիշեր մը, երազիս մէջ, ա՛ն եկաւ անցնիլ իմ քովէս։ Իր քղանցքին հպումը ծունկիս վրայ, ծունկիս մէջ հեշտութեան հով մը սահեցուց եւ կեցայ վայրկեան մը, շարժելու վախնալով, վախնալով շարժումիս մէջ կորսնցնել զիս գերբնացնող շատ նուրբ այդ զգայնութիւնը...։ Առտուն երբոր արթնցայ, քիչ մը աւելի մտերիմ եղած էինք իրարու։



# ՉՈՐՑԱԾ ԱՂԲԻՒՐ

—

Ատեն մը ես երգեր կը չինէի, սիրով հիւսուած անուշ երգեր որոնք ինքզինքիս կը կարդայի ամէն անգամ երբ ուզէի սիրելիիս մօտը ըլլալ։ Իմ սիրելիս չգիտցաւ որ չոր հողի կտոր իր մօտը պարտէզ մը կար ուր կ՚երթար իյնալ իւրաքանչիւր թերթն իր երիտասարդութեան անցնող ծաղիկներուն ... եւ խոպան պարտէզն անոնցմով կը կենդանանար։ Հիմա գարունը անցաւ. այն ծառը իր ճերմակ ծաղիկներէն մերկացաւ ... Չոր հողի կտոր, սիրտս դրացի անոր, տրտում է նորէն։

Երգեր, երգե՛ր ես կը չինէի, լեցուն բուրումով որ սրտիս մէջ կը լենար։ Կուրծքիս վրայ կը պահէի զանոնք, ինչպէս սիրելիիս ձեռքերը։ Բայց սիրելիս, այնպէս ինչպէս անցնող ամպը որ անձրեւ կը կաթէ ծարաւ ծաղիկներուն վրայ՝ չչնջե՛ց թարմ բուրումը որ անոնցմէ կը բարձրանար։ Անցաւ, անհետացաւ յաւէտ՝ անտեղեակ իր անցքին առթած ուրախութեան ու ցաւին։

Ատեն մը կար ուր ես երգելով կը մխիթարուէի։ Երբոր սէրը մեռաւ դեռ յոյսը ունէի, նորէն սիրելու յոյսը ու կ՚երգէի, փոխն ի փոխ, յիշատակին եւ յոյսին գրգի-

Digitized by Google

ռով։ Վերջին անգամ երբ տեսայ զինք, նաւակի մը մէջ կը հեռանար ծովին վրայ։ Պզտիկցող նաւակին մէջ կորսընցուցի իր դէմքը եւ երբոր ուրիշ նաւ մը զիս վերջնապէս բաժնեց այն տեղերէն՝ յոյսն ալ մեռաւ սրտիս մէջ։

Եւ այնպէս ինչպէս անցեալին դարերը ներկայէն բան մը չեն լսեր, այնպէս ա՛լ չիմացայ իր անունը։ Ատեն մը կուլայի իր մահուան գաղափարին վրայ։ Հիմա—օ՜հ, եսասէր գազան—կը խորհիմ թէ իր մեռնելուն լուրը յաւիտենական կենդանութիւն մը պիտի տայ սրտիս մէջ իր մարելու մօտ յիշատակին։ Երգեր նորէն պիտի չինեմ իր անհուր աչքերուն, իր պառկած հասակին, իր կապոյտ շրթներուն վրայ։

Խնայէ՛, Աստուած, իր մատաղ կեանքին։

Digitized by Google

# ԱՆԿՈՒՄԸ

—

*Ամառ գիշեր մը ինկած էի, ճամբուս վրայ բաց խորխորատի մը մէջ որ շատ գիշերներէ ի վեր արդէն, գլխուս պտոյտ կուտար։ Ինկած ու կանգնած էի։ Ծունկերս յաւիտեան վիրաւորուած էին այդ անկումէն ու հոգիիս խորէն մախս մէջ ռխուղ փուշ մը ծլած էր իսկոյն որուն ներկայութիւնը ա՛լ ամէն մտածումիս, ամէն շարժումիս աւելի կսկծանքով պիտի զգայի մէջս։ Օրերով, անիկա տենդ մը եղաւ ու ձեռքերս դողացուց, մուրճ մը դարձաւ եւ ճակատս ներսէն հարուածեց. անիկա բոց մըն էր որ կուրծքս կըսպառէր. զայն մարմնիս երեսը տեսայ պզտիկ արատի մը պէս որ հետզհետէ կը մեծնար, որ նայուածքս կը պղտորէր ու հորիզոնը կը ծածկէր...։*

*Ամիսներէ ի վեր անոր տենչանքին մէջ կը թապլտըկէի ու ամէն օր որ իրիկուն կ'ըլլար տոչորումիս վրայ մխիթարութիւնը կը սրսկէր — նիհա՛ր — դեռ այն օրն ալ ինքզինքս մաքուր պահած ըլլալուն ու խոնջէնքը կը թողուր, անսահման ու սպառող խոնջէնքը՝ ինքզինքիս դէմ այդ անվերջ կռիւէն։*

*Երբ ինկայ, գիշեր մը ուր ամենէն շատ կը տենչայի ու չէի սպասեր անոր, փոսին մէջ զոր ծաղկազարդ տեսայ հեռուէն ու եզերքի վերջին քայլը առած պահուս՝ շնչեցի արդէն ամբողջ գարշանքը որ կը բարձրանար եւ տեսա՛յ ամբողջ նախընթաց տգեղութիւնը զոր կը պարզէր ան, երբոր չուզելով ու չկրնալով ա՛լ ետ դառնալ՝ իջայ անոր*

Digitized by Google

մէջ ու անկումին սարսուռը ցնցելով վերահաստատեց կամ-քին խախտած զօրութիւնը հոգիիս մէջ՝ փախչելո՛ւ, ին-քիրմէս դուրս տեղ մը նետելու ուժին կարօտը ունեցայ։

Երբոր ոտքի ելայ, իմ անմեղութիւնս պարտէզի մը պէս երեւցաւ տեղիս. սպիտակ կոկոն-վարդերով ու բարձր շուշաններով լեցուն, լայնաթերթ երեցուկներու ու բարակ յասմիկներու տակ ծածկուած գոց պարտէզի մը որ յանկարծ կը թօշնէր արեւմտեան կրակէ օձ մը գալարուելով կ'անց-նէր անոնց ամենուն արմատներէն։ Անոր կը փափաքէի, անցեալիս այն երջանիկ պարտէզին ու կըսկսէի հիմա տարակուսիլ անոր երբեք այնպէս ամբիծ գոյութիւն ու-նեցած ըլլալուն՝ որովհետեւ մեղքը անոր մէջը եղած էր միշտ, թրթուրի պզտիկ հաւկիթի մը պէս, ծաղկանց բա-ժակներուն խորը ու խոտերուն մէջ ու այդ մտածումը կը թունաւորէր հիմա յիշատակիս մէջ մինչեւ հին վայելքը իրենց անուշ բուրումներուն ...։

Ինչպէ՞ս հիմա նորէն պիտի կրնայի այս պիղծ ձեռքե-րուս մէջ մաքուր անկարելի զգուանքները կանչել, այս չանթահար մտքիս մէջ ճերմակ երազի դուռները բանալ։ Ինչպէ՞ս մանաւանդ ա՛լ ասկէ ետքը, շատ կատարեալ գե-ղեցկութեան մը յաճախանքին առջեւ, տենչանքը՝ սիրոյ պտուղը՝ պիտի յամր ու բնականօրէն հասուննար՝ երբ գի-տէի թէ նողկանքը որդի նման, անոր մէջն էր ...։

... Ինչպէ՞ս, սակայն ամիս մը վերջը, վերադարձայ կրկին այն փոսին եզերքը, անկումին գինովութեանը հա-մար՝ մոռցած անոր խորին սպառող զարշանքը, ու աչուը-ները գոցած, հեշտանքով, ինքզինքս ձգեցի անոր մէջ...

Digitized by Google

# ԽԱՒԱՐԻՆ ՍԻՐԱՀԱՐԸ

—

*Գառզօ Սիրաֆեանին*

Մութը կը սիրեմ։ Քաղաքին մէջ, աշնան վաղահաս իրիկուններուն թերամութը, փողոցին նոր վառուած լոյսերուն եւ ապակեփեղկերուն մէջ, տարրկաններուն գոյնզգոյն ցոլացումին մէջտեղ ծածանող թեթեւ, թափանցիկ մութը որ արուեստական ու արուեստագէտ խրախճանքի մթնոլորտ մը կը շինէ որուն մէջ ես գերազանցօրէն պիտի սիրէի ապրիլ․․․։ Բայց մութը, ամբողջովին, կատարեալ, թանձրահոծ՝ կը պաշտեմ։ Մութին մէջ միայն միահեծան տէրը կը դառնամ կարողութիւններուս։ Անհատականութիւնս կը ճշդուի մտքիս նայուածքին տակ, գիտակցութիւնս կ'ամփոփուի ու շրջապատիս խաւարէ բոլորակին մէջ զայն լուսաւոր կը տեսնեմ իմ մէջս, հսկելով ընթացքիս ու շարժումներուս վրայ որոնք կը զգամ թէ ազատ ու հետեւաբար ներդաշնակ կը դառնան հետզհետէ․․․։

Արեւին լոյսին մէջ ամէն հանդիպում կը վիրաւորէ զգայնութիւնս։ Անցորդներուն նայուածքէն կը փախցնեմ աչքերս։ Երբեմն, ցերեկները, երբ ուրախ տրամադրութեամբ առանձին սենեկէս դուրս կ'ելլեմ՝ կը մտադրեմ դիմադրել

Digitized by Google

անոնց ու չէչտակի կը նայիմ ամէն բիբերուն խորը ու կը ստիպեմ որ անոնք, առաջին անգամ, անդին դառնան... ։ Փողոցին ծայրը չհասած, սակայն, կըզգամ որ հոգիս կը թուլնայ, ծունկերս կը կորանան արդէն, եւ ա՛լ կը փախչիմ, հալածական, ամէն այդ նայուածքներուն մէջէն, զանոնք ամէնը թշնամի երեւակայելով ինծի, ինքզինքս մերկ զգալով անոնց ներքեւ ու դողալով ու քրտնելով մինչեւ որ կը յաջողիմ առանձին անկիւն մը նետուիլ... ։

Մութը կ՚ազատագրէ զիս ։ Աննպատակ կը մտնեմ լուռ փողոցներուն մէջ ։ Սալայատակին վրայ իմ քայլերուս համաչափ արձագանգը կ՚օրրէ մտածումներս որոնք իրարու ետեւէ, հետզհետէ կը ծնին, կը մեծնան ու թեւերնին բացած, թիթեռնիկներու հոյլի մը պէս, կը թռչին առջեւէս... Ստուերիս կը հետեւիմ շարժումին, լապտերէ լապտեր, աստիճանաբար աճելով քովս ի վեր, կծկտելով ոտքերուս տակ, անհետանալով ու վերսկսելով քայլ մը անդին միեւնոյն խաղը... ։ Բարձր տուներուն, գոց փեղկերուն առջեւէն անցած պահուս՝ մտքով կը մտնեմ անոնց մէջ ու կը տեսնեմ հանդարտօրէն նստած կամ մեռելաբար պառկած ամէն ողորմելի էակները որոնք ցերեկը, մղձաւանջի էակներու պէս՝ այնքան վախցուցին զիս ։ Անոնց ամէնուն վրայ իմ գերազանցութիւնս կը հագնիմ՝ զրահի մը պէս ու կամքս՝ պատեանէն ելած փայլուն սուրի մը նման՝ առջեւէս շողշողացնելով՝ կը մեկնիմ ժողվելու ամենէն դժուար

Digitized by Google

յաղթանակները։ Փառքը, լերան մը կատարէն, կը ճառագայթէ վրաս ու անոր հասնելու համար, ա՛լ ճամբան երկար չթուիր ու դերփուկները չե՛ն խրտչեցներ զիս...

Գիշերը, նաեւ, գթոտ պզտիկ աղջկան մը պէս կը բանայ դուռը վանդակին որ սիրտս է։ Սէրը՝ անվախ ու սիրուն՝ կը թռչկոտի առջեւէս։ Առջեւէս հասակ մը կ'երթայ. մութը կը հալեցնէ, կը սրբագրէ, կ'իտէականացնէ անոր գիծը եւ կը հետեւիմ երկար ատեն անոր քայլերուն, ժողվելով ոտքին շշուկը ու շնչելով անզգալի իր բուրումը, երեւակայելով զայն աղուոր դէմքով ու հոգիով ալ որուն երբեք մօտենամ, չկրնալով դիմադրել հրապոյրիս — որովհետեւ գիշերը անհնարին կերպով կը գեղեցկացնէ զիս — անզօր ինքնապաշտպանութենէ մը ետք՝ պիտի իյնայ թեւերուս մէջ...։ Հեռաւորութիւնը միշտ նոյն կը պահեմ անոր եւ իմ մէջտեղս, զայն կը լեցնեմ հետզհետէ, զայն կը բարձրացնեմ ամէն կարելի գեղեցկութիւններով՝ որոնց գիտեմ թէ հոգի՛ս խմորն է։ Անուշ բառերը կուգան շըրթունքներուս վրայ եւ երկար գգուանքները ձեռքերուս մէջ ու կը ցնցուի մարմինս սարսուռովը տիրացումին, հեռաւոր քարափի մը սանդուղներուն վրայ, ջուրին մէջ ցոլացիկ քթթումին առջեւ աստղերու բիւրաւոր աչքերուն...

... Գիշերը սիրեցի ինչպէս բնութեան ու կեանքին մէջ ամէն ժխտականները, ինչպէս ատելութիւնը, տկարութիւնը, ուրացումն ու մահը։ Մութին ցանցին մէջ ամե-

Digitized by Google

նէն աւելի խորօրէն զգացի ունայնութիւնը ամէն ճիգե-րուս ու երկինքի հեռաւոր պսպղուն աստղերուն տակ՝ լեց-ուեցայ դողովը իմ պզտիկութեանս . . . ։ Իմ ոչնչութեանս գիտակցութիւնը սակայն, մութին մէջ այնչափ որոշ էր՝ որ գոհացում մը կ'ըլլար ու անոյշ թեթեւցած, յանկարծ, կըզգայի որ հիւլէի ծանրութեամբ իմ կեանքս փոխանակ քաշկռտուելու՝ կը թռչէր, կը սահէր երկրի երեսը...

Պիտի ուզեմ որ երբոր հասնի վերջին ժամս՝ զիս կէս-գիշերին անկողնէս հանեն ու դաշտին մէջտեղ, առանձին ծառի մը տակ տանին ձգեն ։ Մութ, աւելի եւ դեռ աւելի շատ մութ պիտի ուզեմ հոգեվարքիս մէջ ծծել ։ Քաղցր ու ներդաշնակ պիտի ըլլայ երկրի մութին մէջէն իմ էութեանս սահիլ, ընկլուզիլ մահուան անտիւ գիշերին մէջ...



Digitized by Google

# ԽՆՋՈՅՔԷՆ ԵՏՔԸ

—

Մինչեւ կէս-գիշեր տեւած էր խնջոյքը։ Հրաւիրեալները ամենքը մեկնած էին եւ ճաշի սեղանին առջեւ, յանկարծ, առանձին գտայ ինքզինքս։

Անշուշտ, հրաւիրեալները որոնք իմ շուրջս էին քիչ մը առաջ, այս ջարդուփշուր սեղանին շուրջը՝ զիս չէին ճանչնար եւ չճանչցան բնաւ՝ որովհետեւ դիմակով երեւցայ միշտ իրենց։

Իմ ամէն անցած քաղաքներուս ամենէն երիտասարդները ու ամենէն գեղեցիկներն էին։ Միակ ժպիտով մը, ձեռքի միակ շարժումով մը կանչեցի զանոնք այս գիշեր ու հնազանդօրէն, իրենց հեռու երկիրներէն ու հեռաւոր տարիներուն մէջէն եկան իմ մենութիւնս լեցնելու։

Օ՛հ, բարի՛, բարի էակները։ Անգամ մըն ալ եւ իրենց ամենուն համար, պատրաստեցի այս խնջոյքը։ Հաճոյքով նստան զայն կոցահարելու ու կէս-գիշերին տնա՛ մեկնեցան, առանց հրաժեշտի, ինչպէս հանրային պարահանդէսի մը բազմականները։

Չեմ գիտեր խօսեցա՞յ անոնց թէ ոչ։ Իրենց ձայնը չլսեցի բնաւ, ոչ ալ իմ ձայնս։ Բայց շատ բաներ ըսի անոնց, նայելով յաջորդաբար անոնց իւրաքանչիւրին երե-

Digitized by Google

*ալ եւ ժողվեցի իրենց պատասխանները անոնց իւրաքանչիւրին նայուածքէն ։*

*Երբոր մեկնեցան, բացի պատուհանս թօթուելու համար ամբողջ մոխիրը որ անոնցմէ թափած էր, եւ մտիկ ըրի մօտակայ զանգակատան մէջ մեռնելու գացող կէս-գիշերին ձայնին ։*

*Եւ ա՛ն ըսաւ ինծի. «Թող տուր երթան անոնք ։ Ինչե՛ր գացին մինչեւ հիմա ։ Մոռացումին թող տուր աւլել անոնց փոշին եւ ա՛լ մի կանչեր զանոնք ։*

*«Պիտի կրնա՞ս երբէք վերստին ըլլալ այն զոր էիր ։ Քանի՞ն կը յիշես այն երազներէն որոնք մէկ գիշեր մը միայն անգիտակից հեշտանք մը առթեցին հոգիիդ ։*

*«Մաքուր սիրոյ երազներուն որոնք ջերմեռանդօրէն կը բարձրացնէիր սրտիդ մէջ, կը հաւատա՞ս հիմա ։*

*«Այն էակներէն որոնց հոգիին կ'ուզէիր թափանցել՝ որչա՞փ են հիմա որոնք անտարբեր պիտի թողուս անցնիլ ։*

*«...Հիմա, սիրոյ առաջին զարկին մէջ տրտմութիւն մը չիկա՞յ արդէն, կանխատրտմութիւնը անոր չուտով անհետացումին ։*

*«Գոհացած մէկ փափաքիդ դէմ քանինե՞ր են որոնք յուսահատ հեռացան ու ա՛լ չես յիշեր զանոնք ։*

*«Արտայայտած մէկ մտածումիդ դէմ քանինե՞ր որոնք փայլակի պէս անցան մտքէդ ու ա՛լ չվերադարձան ։*

Digitized by Google

*«Հիմա, երբոր իւրաքանչիւր օրէն ստանալէ ետք ցաւի ու խնդութեան քու բաժինդ՝ գիշերը մինակ սենեակդ դառնաս ու խորտակուած զգաս ուսերդ անոր բեռին տակ,*

*«Դուռդ ամրապէս փակէ՛ եւ բա՛ց սիրտդ մութին հայելիին մէջ. մութին հայելիին մէջ անաչառօրէն զննէ ինքզինքդ եւ լոյսով յարդարէ ճակտիդ խորշոմները.*

*«Վաղորդայնին կամքովը պրկէ՛ ջիղերը թուլցած բազուկներուդ. աղեղէ՛ կուրծքդ սկսուած գործին հպարտութիւնովը,*

*«Եւ զրահին տակ վաղուան հաստատ առաջադրութիւններուն՝ անկողին մտի՛ր եւ քնացիր անխռով քունը զօրաւորներուն . . .»*



Digitized by Google

# ՎԵՐՋԱԲԱՆ

Հոս կը կնքուի Պատանութիւն մ՚յամեցած.
Հոս կը դադրի ըստուերներու ետեւէն
Վազք մը անխոնջ, պաղատանք մը, կոչ մը ցած…
Արահետներն խառնուղի մ՚հոս կը ձեւեն ։

Ճամբորդն ինչպէս իր բաժնըւած երկիրէն
Ձեռքը աչքին՝ ըշտապելով կ՚հեռանայ,
Չարտասուելու համար այստեղ կը գըրեն
Դողդոջ մատներու բառեր մարդու ակամայ…։

Հիմա նըման պարտիզպանին այն խոհեմ
Որ կը հանէ ածուներէն տունկերն հին՝…
Անեղանակ, յոգնած սէրերս կը խըլեմ

Ցարդարելու համար հողը նոր բերքին,
Ամառներուն, աշուններուն բարերար,
Հոգւոյս խաղցին 'ւ ուրիշներուն ալ համար…։

1901 *Օգոստոս*



# ՑԱՆԿ

—

## ՈՏԱՆԱՒՈՐՆԵՐ



Digitized by Google

## ԱՐՁԱԿ ՔԵՐԹՈՒԱԾՆԵՐ





Digitized by Google

